# ՍԻՐԵԼԻ ՊԱՏԱՆԻ ԸՆԿԵՐՆԵՐ

Դուք գիտեք, անշուշտ, որ մեր լեզուն աշխարհի ամենահին լեզուներից մեկն է: Նա մեր թվականությունից դարեր առաջ արդեն կազմակերպված լեզու էր: Մեր նախնիները, մեր հայրերը, դառն ու դաժան ժամանակների միջով, վայրագ բարբարոսների դեմ անձնազոհությամբ պայքարելով անվթար բերել հասցրել են մեզ մեր ժողովրդի ամենամեծ գանձը — մեր մայրենի լեզուն՝ ճոխ ու հարուստ: Մեր հոգուց են բխած մեր քաղցր, նվագուն բառերը, որոնք մեր ազգային գանձի թանկարժեք մարգարիտներն ու գոհարներն են: Գողթան երգերը և Նարեկացու նվիրական խոսքերը այդ գոհարներով են քանդակված: Քուչակ Նահապետը, Աբովյանը, Դուրյանը, Թումանյանը, Տերյանը մեր հոյակապ լեզվով են զրուցում մեզ հետ: Մենք պիտի սիրենք ու պահպանենք մեր լեզուն, ինչպես նա պահել-պաշտպանել է մեզ բոլոր դարերի մեջ: Սիրեցե՛ք, շատ սիրեցեք, սովորեցեք մեր անգին լեզուն:

**ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ**

## ԲԱՐՈՎ ԵԿԱՐ

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

Նորից աշուն, սեպտեմբեր,
Դպրոցական ուրախ կյանք,
Նոր երազներ, նոր գրքեր,
Ու ժրաջան աշխատանք:
Ո՞վ է, ո՞վ է մեզ կանչում
Զվարթ ձայնով իր հստակ,
Զա՛նգ, այդ դո՛ւ ես ղողանջում
Դպրոցի լույս հարկի տակ:
Քո այդ ճռճի՛չը զնգուն,
Այդ ղողանջը աղմկոտ
Հարազատ է մեր հոգուն,
Մեր սրտերին այնքա՜ն մոտ,

Արագածի զով լանջին
Ծաղիկների գրկի մեջ,
Մեր ականջը քո կանչին,
Քեզ հիշել ենք մենք անվերջ:
Վտակների խոխոջում,
Աղբյուրների կարկաչում,
Քո անուշ ձայնն ենք լսել,
Ու անհամբեր սպասել...
Նորից աշուն ոսկեհեր.
Մենք առույգ ենք, մենք արի,
Բարով եկար, սեպտեմբե՛ր՝
Ուսումնական նոր տարի:






Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԴԵՊԻ ԳՈՐԾ

*Շ. ՍԻՄՈՆՅԱՆ*
(Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստր)

Թանկագին երեխանե՛ր. սկսվեց նոր ուսումնական տարին: Հարազատ դպրոցը լայն բացել է իր հյուրընկալ դռները ձեր առաջ: Եվ հիմա, երբ ամառային արձակուրդներից հետո, նորից եկել եք դպրոց, որքա՜ն նոր տպավորություններ, որքա՜ն նոր հիշողություններ եք բերել ձեզ հետ: Եվ որքա՜ն նոր խնդիրներ են դրված ձեր առաջ, որոնք պետք է լուծվեն ուսումնական տարվա ընթացքում:

Հարազատ Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության հոգատարության հետևանքով ավելի լավ պայմաններ են ստեղծվել ձեր դպրոցական պարապմունքների համար: Նախապատրաստվել են դպրոցական շենքերը, հարստացվել են ուսումնական լաբորատորիաներն ու կաբինետները: Ռեսպուբլիկայի տարբեր տեղերում այս տարի շահագործման է հանձնվում դպրոցական տասնչորս նոր շենք: Շատ դպրոցներում ստեղծվել են ուսումնական արհեստանոցներ ու աշխատանքային սենյակներ, սովորողների գործնական գիտելիքները զարգացնելու նպատակով:

Արդյունավետ, լարված աշխատանք է սպասում ձեզ դպրոցում: Որպեսզի կարողանաք լավ արդյունքներ ձեռք բերել ուսման մեջ, անհրաժեշտ է առաջին օրերից ուշադիր ու լուրջ վերաբերմունք ցուցաբերել դեպի դասը, դպրոցական աշխատանքը, լսեք ուսուցչին, անթերի կերպով կատարեք նրա ամեն մի հանձնարարությունը: Պայքարեցեք հենց ուսումնական առաջին քառորդում ուսման բարձր ցուցանիշներ ունենալու համար: Երբեք չպետք է մտածել, թե ուսումնական տարին երկար է, և առաջին քառորդը կարելի է մի կերպ անցկացնել, իսկ հետագա քառորդներում վերացնել բոլոր թերությունները: Ուսման ամեն մի քառորդ իր պահանջներն ու խնդիրներն ունի: Այդ պահանջներից ու խնդիրներից ամեն մեկն իր ժամանակին և օրինակելի կերպով պետք է կատարել:

Այս տարի հինգերորդ դասարանից մինչև տասներորդը աշակերտները պետք է անցնեն նոր առարկաներ՝ պրակտիկ պարապմունքներ ուսումնա-փորձնական հողամասում, ուսումնական արհեստանոցում, պրակտիկա գյուղատնտեսությունից, մեքենագիտությունից և էլեկտրաէներգիայից: Անհրաժեշտ է լրջությամբ ուսումնասիրել այդ նոր առարկաները, որովհետև նրանք հսկայական նշանակություն ունեն սովորողների գործնական գիտելիքները հարստացնելու համար: Պետք է ինքնաշեն գործիքներով հարստացնել ուսումնական լաբորատորիաները: Ամեն մի աշակերտ պետք է պատրաստի ինքնաշեն գործիք և գործող մոդել:

Այդ բոլորը կարելի է իրագործել այն դեպքում, երբ բարձր հիմքերի վրա է դրված կարգապահությունը դպրոցում, երբ ամեն մի աշակերտ մինչև վերջ կատարում է աշակերտի վարքի կանոնները, երբ ամեն մի պիոներ օրինակելի կերպով է կատարում իր պարտականությունները, լսում է ու կիրառում սովորողների ամենամեծ բարեկամի՝ ուսուցչի խորհուրդներն ու ցուցումները:

Չի կարելի կասկածել, որ մեր պատանեկությունը ի վիճակի է հաղթահարելու ուսման մեջ եղած դժվարությունները և ձեռք բերել լավ ցուցանիշներ:

Հաջողություն ձեզ, սիրելի երեխանե՛ր:

# ՍԿՍՎԵՑ ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ

## ԱՌԱՋԻՆ ԶԱՆԳԸ

*Նորից հնչեց ուսումնական տարվա առաջին զանգը։ Առաջին անգամ դպրոց են մտնում առաջին դասարանցիները։ Նրանք լավ կազդուրվել են ամռանը։ Նրանց համար դպրոցը մի նոր, հետաքրքիր աշխարհ է, որտեղ ձեռք կբերեն կայուն գիտելիքներ և կդառնան մեր երկրի արժանավոր քաղաքացիներ։*

*Ամառվա հանգստի ժամանակ դպրոցականներից շատերն զբաղվել են հայրենի գյուղի ուսումնասիրությամբ։*

*— Հետաքրքիր է մեր գյուղը,— ասում է յոթերորդ դասարանի աշակերտ՝ Արմենակ Վահրամյանը.— շրջապատված է անտառներով, որտեղ կան տարբեր տեսակի թռչուններ ու կենդանիներ։*

*Ամառվա արձակուրդի ժամանակ աշակերտների մեծ մասը օգնել է կոլտնտեսությանը։ Կոլտնտեսության ծխախոտի պլանտացիաներում են աշխատել վեցերորդ դասարանցիներ՝ Լիդա և Անիկ Վահրամյանները, Աղունիկ Դավթյանը, Էնգելինա Վահրամյանը և ուրիշները։ Նրանց օգնել է բնագիտության դասատու ընկեր Փ. Վարոսյանը։ Իսկ դպրոցի հինգերորդ և երկրորդ դասարանների աշակերտներ՝ Մանիկ և Մովսես Բարսեղյանները, իրենց հոր հետ խնամում էին կոլտնտեսության երեսունևերկու հորթ։ Այդ հորթերը գեր են և առողջ, նրանց քաշը օրեկան 500—700 գրամով ավելանում է։*

*Դպրոցի դիրեկտոր ընկեր Ի. Կիրակոսյանի ղեկավարությամբ կազմված էր տղաների օղակ։ Նրանք բերքահավաքի ընթացքում տեղափոխում էին բերքը։ Իրենց լավ աշխատանքով աչքի էին ընկնում Գագիկ և Ռոբերտ Վահրամյանները, Լավրենտի Կիրակոսյանը։ Այսպիսով մեր աշակերտները ֆիզիկապես ամրացած և նոր եռանդով կսկսեն ուսումնական տարին։*

*ՆՈՐԱ ՄՈՍԻՆՅԱՆ*

(Ալավերդու շրջանի Արդվի գյուղի դպրոցի ուսուցչուհի)

## ՄԵՐ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆԸ

*Այս տարի առաջին անգամ դպրոց գնացող երեխաների հետ ամռանը հաճախ էինք անցնում դպրոցի վերակառուցվող շենքի մոտով և շատ ուրախանում։ Նրանց արդեն ասել էինք, որ սեպտեմբերի մեկից իրենք էլ սովորելու են այս շենքում։*

*Եվ ահա, մի կիրակի օր, մենք որոշեցինք առաջին դասարանցիների հետ միասին այցելել դպրոց։ Այդ մասին հայտնեցինք դպրոցի դիրեկտոր ընկեր Կիրակոսյանին։*

*— Շա՞տ եք հետաքրքրվում,— ժպտալով հարցրեց նա,— գնանք։*

*Մտնելով շենքը, մենք անցանք լայն միջանցքով, դիտեցինք դասասենյակները։ Այնտեղ դեռ զգացվում էր թարմ ներկի հոտը։ Այնքա՜ն լուսավոր, ընդարձակ ու հարմար էին դասասենյակները։*

*Մենք չէինք ուզում հեռանալ հարազատ դպրոցից։ Դիրեկտորին շրջապատած, խոսում էինք այն մասին, որ այժմ ավելի լավ պետք է սովորել։*

*ԷՆԳԵԼԻՆԱ ՎԱՀՐԱՄՅԱՆ*
*ԼԱՎՐԵՆՏԻ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ*

(Արդվի գյուղի դպրոցի 6-րդ դասարանի աշակերտներ)

## ՃԱՄԲԱՐԻՑ — ԴՊՐՈՑ

Այս տարի ես հանգստացա Սպառկոոպերացիայի աշխատողների արհմիության Հանքավանի պիոներական ճամբարում։ Ճամբարը ինձ շատ դուր եկավ։ Բնությունը հիանալի էր։ Այնտեղ, հենց առաջին օրերից ես մասնակցում էի պատանի բնասերների խմբակի աշխատանքներին։ Պատրաստեցի բույսերի հերբարիումներ, միջատների կոլեկցիաներ և նվեր բերեցի հարազատ դպրոցին։

Ես փոխադրվել եմ յոթերորդ դասարան։ Այս տարի նոր առարկաներ ենք անցնում՝ ՍՍՌՄ Կոնստիտուցիա և քիմիա։

Դեռևս ամռանը զգում էի, որ ես որոշ դժվարությունների կհանդիպեմ։ Այդ պատճառով էլ լրիվ օգտագործում էի սահմանված ժամերս։ Ճամբարի մոտով հոսում է Մարմարիկ գետակը, որի վճիտ ջրերում ամեն օր լողանում էի, արևի վաննա ընդունում։ Ինձ համար շատ հաճելի էր անտառում գիրք կարդալը, շախմատ, շաշկի և ուրիշ խաղեր խաղալը։

Ես երբեք չեմ մոռանա ճամբարում կազմակերպված հետաքրքիր զրույցները, էքսկուրսիաները ու արշավները, գեղարվեստական երեկոները։

Բոլորս կազդուրված, թարմ ուժերով վերադարձանք դպրոց և հաջողությամբ սկսեցինք նոր ուսումնական տարին։

*ՄԱՐՈ ՄԵՍՐՈՊՅԱՆ*

*(Երևանի № 48 դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի)*

1



# ՆՈՐԵԿԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Այդ օրը առաջին դասը հայոց լեզու էր։ Դասատուն՝ ընկեր Մանուկյանը, որ միաժամանակ դասարանի ղեկավարն էր, ներս մտավ զանգից մի փոքր հետո, հետը բերելով մի բարձրահասակ, նիհար տղայի և դիմելով ամբողջ դասարանին, ասաց.

— Ահա ձեզ մի նոր ընկեր էլ։ Ձեր նոր ընկերոջ անունը Սիմիկ է։

Մի քանիսը քիչ մնաց փռթկացնեին. բա Սիմիկ էլ անո՞ւն կլինի... Բայց դասատուն մի սաստող հայացքով կարգի հրավիրեց բոլորին, ապա շարունակեց.

— Սիմիկը չորրորդում պիտի լիներ, բայց հիվանդության պատճառով մի տարի կորցրել է։ Տեսնո՞ւմ եք, այս տարի էլ մի շաբաթ ուշացումով է գալիս։ Դուք պիտի ամեն կերպ օգնեք ձեր նոր ընկերոջը, հասկացա՞ք։

— Հասկացանք, հասկացա՜նք,— ամեն կողմից բացագանչեցին աշակերտները։

Դասատուն Նորեկին նստեցրեց ամենավերջին նստարանին, Աշոտի կողքին։ Մինչև այդ, դասարանում ամենաբարձրահասակն Աշոտն էր, բայց Նորեկն այնքան բարձրահասակ էր, որ Աշոտը նրա մոտ առաջին դասարանցի էր թվում։

Երրորդ «ա» դասարանում այդպիսի անհանգիստ դաս երբեք չէր եղել։ Առջևում նստածներն անընդհատ շրջում էին գլուխները՝ Նորեկին լավ տեսնելու համար։

Մանուկյանը մի քանի անգամ նկատողություն արեց։

— Երեխանե՛ր, հանգիստ նստեցեք, ի՞նչ եք անընդհատ շուռ ու մուռ գալիս։

Հենց որ դասամիջոցի զանգը հնչեց, բոլորն աղմուկով շրջապատեցին Սիմիկին։ Հակոբիկն առաջինը մոտեցավ ու տղայի թևից բռնելով, հարցրեց.

— Ուզո՞ւմ ես՝ արի ընկերներ լինենք. ես ընկեր Մանուկյանին կասեմ, որ մեզ միասին նստեցնի։

Բայց Աշոտը մի կողմ հրեց Հակոբիկին ու դիմելով Սիմիկին, ասաց.

— Արի ուժերս չափենք։

— Ուժերս ինչպե՞ս չափենք,— զարմացած ու շփոթված հարցրեց Նորեկը։

— Տեսնենք ո՞վ ում գետին կգցի։

Մյուս տղաները բերանները բաց՝ մնացին տեղները կանգնած. աղջիկներն էլ անմիջապես սկսեցին քչփչալ։ Նորեկն ավելի շփոթվեց.

— Չէ՜, ինչո՞ւ,— ասաց,— ես կռիվ չեմ սիրում։

— Ուժներս պիտի չափենք,— պնդեց Աշոտը.— դա ի՞նչ կռիվ է որ...

Նորեկը մի պահ շուրջը նայեց. ասես որևէ մեկի օգնությանն էր սպասում։ Հակոբիկն անմիջապես մեջ մտավ.

— Դե՜ դու էլ... ի՞նչ ես կպել. մարդը չի ուզում կռիվ անել, էլի՛։

— Դե որ այդպես է՝ գնանք բակի իմ քարը բարձրացնենք. տեսնենք կարո՞ղ է իմ չափ...

Այդ առաջարկին բոլորն էլ համաձայնություն տվեցին։

Ամբողջ դասարանն արդեն հավաքվել էր մի անկյունում ընկած քարի շուրջը։

— Առաջ ես սկսեմ, թե՞ դու,— դիմեց Սիմիկին Աշոտը։

— Դու։

Աշոտն անմիջապես թևերը վեր քշտեց, աղմուկով թքեց ձեռքերի մեջ և ոտքերը միմյանցից հեռու դնելով, երկու ձեռքով բռնեց քարն ու բարձրացրեց։

— Մեկ, երկու, երեք, չորս... — հաշվում էր ամբողջ դասարանը։

Մինչև հիմա այդ դասարանում ոչ մի աշակերտ չէր կարողացել Աշոտի չափ բարձրացնել քարը։ Դրա համար էլ դա ստացել էր «Աշոտի քար» անունը։ Աշոտն ութ անգամ բարձրացրեց ու իջեցրեց քարը։

— Դե՛, հիմա՝ դու...

Սիմիկը նայեց բոլորին, ապա անշնորհք շարժումներով մոտեցավ ու սկսեց.

— Մեկ, երկու... երեք, չորս...

Հինգերորդ անգամին նա քիչ էր մնում քարը գլխին դցեր։

Հինգ անգամ դասարանի տղաներից շատերն էին կարողանում բարձրացնել։ Բոլորն էլ հիասթափվել էին։ Այդքան բոյով է՝ ուժ չունի։

Զանգը հնչեց։ Աշակերտներն անմիջապես մոռացան Նորեկին և Աշոտի շուրջը խմբված քայլեցին դեպի դասարան։ Աշոտը գնում էր լայն-

լայն, հաղթական քայլերով, գլուխը բարձր պահած։

Նորեկի կողքին միայն Հակոբիկը մնաց։ Նա Սիմիկի հանդեպ իրեն արդեն զգում էր հովանավորի պես։

— Արի ընկերներ լինենք,— նորից առաջարկեց նա։— Ես դրոշմանիշների կոլեկցիա եմ հավաքում. արդեն 69 հատ ունեմ։



— Ահա ձեզ մի նոր ընկեր էլ:

Այդ իմանալով, Սիմիկն անսպասելիորեն զվարթացավ։

— Ես էլ եմ հավաքում,— ասաց նա,— հիվանդ ժամանակս սկսեցի։ Հիմա արդեն հարյուր երեսուն հատ ունեմ։

2

Մանուկյանը դասարան մտավ թե չէ, այնպիսի հանդիմանական հայացքով նայեց բոլորին, որ երեխաներն անմիջապես զգացին՝ ինչ-որ բանում մեղավոր են։

— Լավ չի,— ասաց դասատուն.— դուք խոսք եք տվել և ձեր խոստումը չեք կատարում։

Երեխաներն անհանգստացան։ Այդ ե՞րբ, ի՞նչ խոսք են տվել։ Հակոբիկը նույնիսկ կարմրեց։

— Դուք արդեն մոռացե՞լ եք,— շարունակեց Մանուկյանը,— ավելի վատ։ Դե, ուրեմն հիշեցնեմ։ Ես ձեզ խնդրեցի, որ օգնեք ձեր նոր ընկերոջը, դուք էլ խոստացաք։

Բոլորը շփոթվեցին։ Ինչպես էին մոռացե՜լ...

— Ես այդպիսի բան չէի սպասում։ Բոլորովին աչքաթող եք արել ձեր նոր ընկերոջը. անցյալ օրը նա թվաբանությունից «2» է ստացել. դա շատ մեծ ամոթ է, շատ։

— Ես թվաբանությունից կօգնեմ,— տեղից բացագանչեց Նվարդը։

— Ինչո՞ւ միայն թվաբանությունից. ամեն քայլափոխին պետք է օգնեք,— ասաց դասատուն։

3

Դասամիջոցին երեխաներն այնպես շրջապատեցին Սիմիկին, ինչպես այն օրը, երբ նա առաջին անգամ մտավ երրորդ «ա» դասարան։

— Ես թվաբանությունից քեզ կօգնեմ, ուզո՞ւմ ես,— հարցրեց Նվարդը։

— Ես հայերենից,— մեջ մտավ Կարենը։

Երեխաներից ամեն մեկն աշխատում էր իր օգնությունն առաջարկել։ Հակոբիկն ու Աշոտն էին միայն, որ մի կողմ քաշված, լուռ նայում էին իրենց ընկերներին։ Դե, իհարկե, երրորդ «ա» դասարանում միայն այդ երկուսն էին, որ «3» գնահատականներ էին ստանում։ Հատկապես վատ էր Հակոբիկը։ Նա շատ էր ուզում, որ ինքն էլ օգնի Սիմիկին, բայց ամաչում էր. ընկերները կծաղրեին, կասեին. «Ա՛յ թե օգնողն ես, հա՜, դու դեռ մի քո երկուսները վերացրու»։

Բայց, երբ դասի զանգը հնչեց և բոլորը գրավեցին իրենց տեղերը, մինչև դասատուն ներս կմտներ, Հակոբիկը մոտ վազեց Սիմիկին և նրա ականջին շշնջաց.

— Լսի՛ր, եթե ես ինքս երեք չունենայի՝ քեզ կօգնեի. բայց ես, ազնի՛վ խոսք, իմ երեքները կվերացնեմ։ Գիտե՞ս, ես որոշեցի քեզ նվիրել իմ բրազիլիական այն մեծ, կապույտ դրոշմանիշը. գիտե՞ս որը, այն, որ դու չունես ու քեզ շատ էր դուր եկել։

Այդ պահին ներս մտավ ուսուցչուհին, և Հակոբիկը գնաց, գրավեց իր տեղը։

Աշոտը, որ նույնպես լուռ ու մռայլ գրավել էր իր տեղը Սիմիկի կողքին, հանկարծ թեքվեց դեպի իր հարևանը և շշնջաց.

— Գիտե՞ս ինչ... քեզ հետ մարմնամարզությունը կպարապեմ։ Ես այնպես կանեմ, որ դու էլ լինես ուժեղ։ Ինձ իմ եղբայրն է սովորեցրել։

— Աշոտ, դասն արդեն սկսված է,— նկատողություն արեց ուսուցչուհին։

Աշոտն ուղղվեց իր տեղում, բայց մի անգամ էլ նայելով իր հարևանի դեմքին, ժպտաց։ Սիմիկն էլ մտերմական ժպիտով պատասխանեց նրա հայացքին։

Ու թվում էր, թե ոչինչ չի փոխվել երրորդ «ա» դասարանում։ Ահա ամենաբարի տղան՝ Հակոբի-

կը աչքերը լայն-լայն բաց արած լսում է դասը։ Ահա Նվարդը երբեմն աչքի պոչով նայում է Սիմիկի կողմը և մտածում. «Ինչ մեծ տղա է, կկարողանա՞մ հետը պարապել, ինձ կլսի՞»։ Ահա Կարենը, Աշոտը... Նույն դասարանն է, նույն աշակերտները։ Կարծես ոչինչ էլ չի փոխվել։ Ասենք ինչպե՞ս չէ։

Կատարվել է ինչ-որ մեծ, շատ մեծ ու լավ բան։ Սիմիկը նայում էր իր շուրջն ու զգում, որ ինքն այլևս այդ դասարանում նորեկ չէ։ Բոլորը հարազատ են, սիրելի։ Կարծես ինքն ամբողջ կյանքում, այ այսպես, նստած է եղել այս դասարանում, այդ ուժեղ, ամրակազմ ընկերոջ՝ Աշոտի կողքին, այս լավ ընկերների մեջ։

Եվ Սիմիկը հպարտությամբ փայլող մի լուսավոր հայացքով նայում էր իր ընկերներին։

## ԱՇՆԱՆԱՅԻՆ ՑՆԾՈՒԹՅՈՒՆ

Ս. ԽԱՐԱՋՅԱՆ

Ճամբարները անցած ամռան,
Անտառները բավ ու լռին
Ներշնչանքի, կյանքի նման
Ուժ են տվել մանուկներին:

Կազդուրել են, տվել եռանդ
Սարի ջրերը մշտարթուն,
Հով են արել անտառ ու հանդ,
Շշնջացել՝ հանգստություն...

Երբ շոգ ամառը գնացել,
Պիոներներին ասել է նա՝
— Ես հեռանում եմ, բալիկնե՛ր,
Դպրոցներին բացում ճամփա:

Այգիներն են խշշում բովիչ,
Ոսկե աշունն է խոր շնչում
Եվ անհամար դպրոցների
Զվարթ զանգերն են ղողանջում:

# ՎԵՐՋԻՆ ԽԱՐՈՒՅԿԸ

Ս. ՀՈՌՈՓՅԱՆ
(ՀԼԿՍՄ Կիրովյան շրջկոմի քարտուղար)

Նկ. Վ. ՄԻՆԱՍՅԱՆԻ

— Ահա և առաջին ճամբարի պիոներները,— ուրախացած կանչեց Հրաչիկը և վազեց ճամբարի պետի մոտ։

Սկսվեց աշխույժ երեկոն Կիրովյան շրջանի քաղաքային 18-րդ ճամբարում։ Չէ՞ որ նրանց մոտ հյուր էին եկել հարևան ճամբարների պիոներները, ծնողները։ Ամենուրեք լսվում էր պիոներների զվարթ խոսակցությունը, զնգուն ծիծաղն ու երգը։ Փոքրիկ Գոհարիկը իր բարձր ու գիլ ձայնով երգում էր ոգևորված.

Մաշանում է բամին դրոշակը մեր,
Շարժվում է կայմը այնպես,
Այսօր ճամբարում, ընկե՛ր պիոներ,
Վերջին խարույկն է, տե՛ս:

Վերջին խարույկը։ Ի՜նչ շուտ անցան ճամբարային կյանքի ուրախ օրերը։ Իսկ այժմ ահա, մեկը մյուսին ընդհատելով, նրանք միմյանց պատմում են հետաքրքիր դեպքերի, արշավների և էքսկուրսիաների մասին։

— Հետաքրքիրը Արագածի գագաթը բարձրանալն էր,— ոգևորված պատմում է Էմման, և պիոներները վերհիշում են, թե ինչպես բարձրացան Արագածի հարավային գագաթը, որի բարձրությունը ծովի մակերևույթից 3932 մետր է։ Այնտեղ նրանք կարմիր դրոշ ամրացրին, իսկ վայրէջքի ժամանակ առանց խուճապի մատնվելու դիմացան կարկուտին։

— Ամենահետաքրքիրը Թորոսիկի սրսողությունն էր,— շարունակում է Էմման և չարաճճի ժպիտով նայում էր ընկերներին։

Բոլորը ժպտում են։ Թորոսիկը գլուխը կախ է գցում ամոթխած։ Դե, նա ինչ մեղավոր է, որ փախչող աղվեսին նապաստակի տեղ էր դրել և ցանկացել էր հետևից վազել ու բռնել։

Ճամբարների պիոներները ճանապարհորդելու ժամանակ դպրոցի համար հավաքել էին քարերի, միջատների, բույսերի բազմաթիվ նմուշներ։

— Ահա այս գեղեցիկ քարերը Սևանից ենք բերել,— ասում է Վոլոդյան և հպարտությամբ սե-

ղանին լցնում գույնզգույն քարերի մի ամբողջ կույտ,— իսկ այս մեծ թիթեռը Խոսրովի անտառից,— ավելացնում է նա:

Երեխաները զարմանքով նայում են թեյի ափսեի մեծություն ունեցող մետաքսաթև թիթեռին, որը գնդասեղով ամրացված է տախտակին:

Հետաքրքիր են նաև ճամբարներում գործող «Հմուտ ձեռքեր», ֆոտո-սիրողների, ավիամոդելիստների, ձեռագործողների, քանդակագործների և այլ խմբակների պատրաստած էքսպոնատները:

...Ճամբարի պետ Մարատ Մարտիկյանի հրամանով հինգ պիոներ վառվող ջահերը ձեռքերին, տարբեր կողմերից վազելով մոտենում են բակի կենտրոնում դրված փայտակույտին և վառում: Թնդում է պիոներական ուռան: Վառվում է ճամբարի վերջին խարույկը, որի շողերը շոյում են խարույկի շուրջը հավաքված երեխաների կենսախինդ դեմքերը: Պիոներները մեկը մյուսի հետևից սկսում են երգել ու պարել, արտասանել ու նվագել: Որքա՜ն սահուն և համաչափ են պարում Ալբերտն ու Սվետիկը. բոլորը հիացած են նրանցով: Նրանք մի երկու ամիս առաջ պարել չգիտեին: Նրանց օգնեց ճամբարում կազմակերպված պարի խմբակը:

Ալբերտին ու Սվետիկին փոխարինում է Ռուզմիկը, որն իր զիլ, բայց հաճելի ձայնով երգում է մեր երեխաների երջանիկ կյանքին նվիրված մի երգ: Նրան ձայնակցում են խարույկի շուրջը հավաքված երեխաները: Եվ քանի գնում այդ երգը դառնում է է՛լ ավելի հզոր ու խրոխտ:

Շեփորահարը փչում է «ավարտ» ազդանշանը: Բակի կենտրոնում դեռևս կարմրին է տալիս ճամբարային վերջին խարույկը, իսկ կայմի վրա, հպարտ ու լուսաշող, փայլում է հնգաթև կարմիր աստղը:

Վերջացավ ճամբարային հետաքրքիր առօրյան: Մեր երկրի դպրոցներում հնչեց նոր ուսումնական



Վառվում է ճամբարի վերջին խարույկը...

տարվա առաջին զանգը: Հանգստացած ու թարմացած երեխաները նոր եռանդով սկսեցին ուսումնական տարին և կանեն ամեն ինչ, որպեսզի սովորեն միայն լավ ու գերազանց գնահատականներով:

## ԵՐԱԶԱՆՔ

*Է. ԱՎԱԳՅԱՆ*

Գրքեր, քարտեզներ փռած իր առաջ
Վահեն մտքերով բռնել է հեռուն.
Դարձած նավապետ և՛ հմուտ, և՛ քաջ,
Նոր ճանապարհ է փնտրում բևեռում:

Վարում է նավը անվախ, աներեր,
Ծովի փրփրաքաշ ալիքն է ճեղքում.
Գնում միշտ առաջ՝ անհաս հեռուներ
Նավի ամրակուռ ղեկը իր ձեռքում:

Հանկարծ երազի մշուշից անհուն
Մի ձայն է լսվում: Մոր ձայնն է նրա.
— Աչքերդ հառած անորոշ հեռուն
Ի՞նչ ես մտածում գրքերի վրա:

Թե որ ուզում ես իրական դառնա
Երազդ լուսե, ու լավ մարդ լինես,
Ամենից առաջ պետք է այսօրվա
Տված դասերը շատ լավ սովորես:

# ՉՈՒՂԱՐԿՎԱԾ ՆԱՄԱԿԸ

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. ԱՐ. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Երեկոյան, երբ Գարիկի մայրը ճամպրուկից հանում էր նրա իրերը, վերնաշապիկներից մեկի գրպանում ինչ-որ ծալծլված ծրար գտավ։ Նա ծրարի միջից տրորված մի թերթիկ հանեց։

Գարիկը, որ այդ օրն էր վերադարձել ճամբարից, հանգիստ քնած էր փափուկ անկողնում։ Ննջասենյակը ողողվել էր անկյունում վառվող լուսամփոփի կապտավուն լույսով։

Մայրը բացեց տրորված թերթիկն ու սկսեց կարդալ.

«Ռուբիկ ջան, ստացա քո նամակը։ Իմացա, որ դու գտնվում ես Սև ծովի ափին և ամեն օր գնում ես լողանալու։ Երևի հիմա բոլորովին սևացել ես, պնդացել։ Ճիշտ է, Ծաղկաձորում ծով չկա, բայց այստեղ այնպես լավ է, օրերն այնպես արագ են թռչում, որ թվում է, թե նոր եմ ճամբար եկել։



...Նա ի՞նչ Օլեգ է որ...

Մեր ճամբարը գտնվում է անտառի եզրին։ Հա՛, մոռացա ասել, որ մենք վրաններում ենք քնում։

Հիմա ուշ գիշեր է։ Դրսից միայն անտառի խշշոցն է լսվում, մեկ էլ ծղրիդների ճռռոցը։ Մեր վրանի բոլոր տղաները վաղուց քնել են։ Մենակ ես եմ արթուն մնացել։ Շարունակ միևնույն բանի մասին եմ մտածում, իսկ գիտե՞ս ինչի մասին. ասենք դու որտեղի՞ց իմանաս։

Ռուբիկ ջան, մի քանի օր առաջ, մեր ճամբարում որոշվեց բացօթյա ներկայացում կազմակերպել... Ցուցադրվելու էր «Երիտասարդ գվարդիա» պիեսից մի պատկեր։ Թատերական խմբակի ղեկավարը կանչեց ինձ ու ասաց.

— Գարի՛կ, ես իմացա, որ դու դպրոցում լավ ես սովորում։ Քո բոլոր ընկերները սիրում են քեզ, դու բոլորից հարմարն ես Օլեգ Կոշևոյի դերը խաղալու համար։ Հը՞, կկարողանա՞ս։

Հուզմունքից սիրտս սկսեց թպրտալ։ Ղեկավարն ասաց, որ ես Օլեգի դերից մի փոքր կտոր կարդամ. երևի ցանկանում էր իմանալ՝ կկարողանա՞մ...

— Կարող եմ անգիր ասել, ուզո՞ւմ եք,— ուրախությունից ճչացի ես։

— Նույնիսկ անգի՞ր,— զարմացավ ղեկավարը։

Ու ես սկսեցի արտասանել այն կտորը, հիշո՞ւմ ես, որ մենք քեզ հետ միասին գիշերներ շարունակ արտասանում էինք։

Վերջացրի։ Ղեկավարը երկար նայեց աչքերիս և ասաց.

— Ապրես, Գարի՛կ, դու կկարողանաս։

Ինչքա՜ն ուրախ էի ես, Ռուբիկ ջան։

Ճաշից հետո մենք հավաքվեցինք անտառի մի փոքրիկ բացատում և սկսեցինք փորձել։ Երբ վերջացրինք, աղջիկներից մեկը, որը պետք է Ուլյանայի դերը խաղար, մոտեցավ ինձ ու ասաց.

— Քեզ այնպես լավ է սազում Օլեգի դերը. Գարի՛կ, այնքա՜ն լավ է սազում...

Այդ պահին Վարդգեսը, այն շեկլիկը, որ մեր բակում է ապրում, մի պահ նայեց բոլորին և ապա զարմացած հարցրեց.

— Գարիկը՝ Օլե՞գ, այդ էր պակաս, նա ի՞նչ Օլեգ է որ...

— Ինչո՞ւ,— զարմացան բոլորը։

— Դու իրավացի չես, Վարդգե՛ս, Գարիկը լավ ընկեր է, դասերն էլ լավ է սովորում,— պատասխանեց տղաներից մեկը։

— Ի՞նչ անենք, թե լավ է սովորում, բա որ մորը հարգել չգիտի՞...

Ռուբիկ ջան, ես գիտեմ, որ նա պարզապես նախանձում է և ուրիշ ոչինչ։ Մի՞թե ընկերը այդպես կլինի, բոլորը գովում են, իսկ նա՞...

— Գարի՛կ, մի՞թե այդ բոլորը ճիշտ են,— պարմացած հարցրեց ղեկավարը։

Ես շփոթվելուց չիմացա ինչ պատասխանեմ. լռեցի։ Վարդգեսը այս անգամ նորից մեջ ընկավ և բոլորի առաջ... պատկերացնո՞ւմ ես, Ռուբիկ ջան, բոլորի առաջ...

— Ուզո՞ւմ եք իմանալ, թե ինչպիսին է Գարիկը,— ասաց նա,— ահա, թե ճամբար գալուց մի քանի օր առաջ ինչ պատահեց... Այդ օրը նրա մայրը գործարանից շուտ վերադարձավ. հիվանդ էր։ Գարիկը տանն ամբողջովին տակն ու վրա էր արել։ Ոչ մի բան իր տեղում չէր։ Եվ մայրը այդպես հիվանդ ու հոգնած սկսեց դասավորել թափ-



Մայրը վերջացրեց անավարտ նամակը...

թփված իրերը. իսկ Գարիկը անտարբեր վերցրեց գնդակն ու պատրաստվեց գնալ։ Մայրն այդ տեսնելով ասաց.

— Ա՜խ, Գարի՛կ, մի՞թե դու ինձ չես խղճում, ես աշխատանքից գալիս եմ հոգնած, իսկ դու ոչ մի բանով չես ուզում օգնել։ Գոնե մի դույլ ջուր կբերեիր, տանը բոլորովին ջուր չկա։

Իսկ Գարիկն ահա թե ինչ պատասխանեց.

— Դա աղջկա գործ է, տղան այդպիսի գործեր չի անում, ավելի լավ է ինքդ բերես,— ասաց նա ու դուրս գնաց։

Դե ասացեք, արժանի՞ է նա Օլեգի դերը խաղալու, մի՞թե Օլեգը այդպիսի բան կաներ։

— Ահա թե ինչպիսին ես եղել դու, Գարի՛կ, ինչ կանեիր դու, եթե հանկարծ այդ ներկայացմանը մայրդ էլ ներկա լիներ։ Ի՞նչ խղճով դու մայրիկիդ առջև կարտասանեիր այս խոսքերը,— ասաց ղեկավարը և պիեսը թերթելուց հետո սկսեց կարդալ— «...որքա՜ն լավ է զգում մարդ իրեն, երբ մայր ունի։ Որքա՜ն եմ սիրում քո ձեռքերը, թանկագին մայրիկ, և ինչքա՜ն բան են արել նրանք ինձ համար...»։

Ռուբիկ ջան, ես այլևս չկարողացա լսել։ Ինձ թվում էր, թե մի քիչ էլ այդտեղ կանգնած որ մնայի, բոլորովին շնչահեղձ կլինեի... Եվ ես փախա նրանցից, փախա հեռու, պառկեցի խոտերի վրա և...

Ռուբիկ ջան, եթե դու էլ իմ փոխարեն լինեիր, անպատճառ կարտասվեիր»։

Մայրը աչքերը հեռացրեց նամակից։ Տառերը մշուշվեցին ու կարծես ձուլվեցին իրար։ Արտասուքի երկու շիթ գլորվեցին նրա այտերի վրայով ու կաթեցին նամակին։ «Մի՞թե այս բոլորն իմ տղան է գրել...», մտածեց նա ու նորից շարունակեց կարդալ։

«Ռուբիկ ջան, ես չեմ հիշում, թե որքան մնացի այդպես պառկած։ Ես միայն այն գիտեմ, որ երբ գլուխս բարձրացրի, իմ կողքին, խոտերի վրա պառկած տեսա նրան՝ Վարդգեսին։ Նրանից քիչ հեռու կանգնել էին տղաներն ու աղջիկները։

— Հեռացիր, դու բոլորովին էլ իմ ընկերը չես,— բարկացած ճչացի ես։

Նա ոչինչ չասաց։ Վեր կացավ ու լուռ հեռացավ։ Ի՞նչ կարող էի անել, քեզ եմ հարցնում, Ռուբիկ ջան, ասենք ես էլ...»

Մայրը վերջացրեց անավարտ նամակը և մոտեցավ քնած տղային։ Կանգնելով նրա գլխավերևը, նայեց երկա՜ր, երկա՜ր։ Նայեց ու նրա գլխում սկսեց պտտվել միևնույն հարցը. «Փոխվե՞լ է տղան, թե՞ ոչ»։

Մայրը անսահման երջանիկ էր զգում, որ իր տղան մենակ չէ, որ նա այնպիսի ընկերներ ունի, ինչպիսին Վարդգեսն է։ Չէ՞ որ այն ժամանակ, երբ ինքը հիվանդ պառկած էր, մինչև ուշ երեկո Վարդգեսն էր խնամել իրեն։

# ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ

## ՍԵՊՏԵՄԲԵՐԻ ՄԵԿ

Սեպտեմբերի մե՛կ, խնդության դու օր,
Անհուն կարոտով սպասում ենք քեզ.
Դու մեր նոր տարի վառ ու լուսավոր,
Դու ուսում սիրող մանուկ լուսերես:
Սեպտեմբերի մե՛կ, մեզ կանչում ես դու,
Դեպի գիտության գիրկը ոսկեզօծ
Մեր նամբարներից, տեղերից հեռու
Դու կանչում ես մեզ դեպի լույս՝ դպրոց:

ԺԻՐԱՅՐ ԹՈՐՈՍՅԱՆ

(Երևանի 39-րդ դպրոցի աշակերտ)

## ԱՂԲՅՈՒՐԸ

Հուշաղբյուր է, նայիր, կանգնած
Այս նորակերտ շենքի կողքին,
Հայրենական կռվում ընկած
Հերոսների հիշատակին:

Եվ երբ նրա ջուրը զուլալ
Թափվում է և խաղաղ հոսում,
Թվում է, թե կռվում զոհված
Մարտիկների ձայնն եմ լսում...

Լինենք զգոն, քաջ ու անահ,
Չխնայենք ոչինչ, ոչինչ,
Որ միշտ մաքուր ու զով մնա
Հերոսության աղբյուրը ջինջ...

ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ

(Կրասնոսելսկի շրջանի Թաշքենդ գյուղ)

## ԵՐԵՎԱՆ

Արարատյան դաշտը մեր
Ուրպես դալար մի այգի,
Իսկ դու նրա սիրտն ես մեծ,
Երևա՛ն իմ սիրելի:

Անիր, ծաղկիր, Երևա՛ն,
Այս արևի շողի տակ...
Դարերն են քեզ եղել մայր
Դու հին, բայց նոր մեր քաղաք:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԹՈՐՈՍՅԱՆ

(Երևանի 39-րդ դպրոցի աշակերտ)

## ԳԵՏԱԿԸ

Պարտեզի միջով,
Ուրախ կարկաչով
Գետակն է վազում,
Անվերջ երգ ասում:

Ես ու Արշակը
Ամռան այս շոգին,

Նրա ջրերում
Խաղում ենք կրկին:

Ի՜նչ լավն ես գետակ,
Սիրում ենք մենք քեզ,
Միշտ վազիր հատակ
Զովացրու դու մեզ:

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

(Երևանի 36-րդ դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ)

## ՀԱՅՐԵՆԻ ԳՅՈՒՂ

Փռվել ես վարար գետի ափերին,
Եվ կանաչապատ գիրկդ ես բացել,
Օ՜, իմ մանկության ընկեր թանկագին,
Ինչքա՜ն ես փոխվել ու գեղեցկացել:

Քո դաշտերում ես շատ եմ ման եկել,
Խմել եմ ջուրդ սառնորակ ու զով,
Ծաղիկ եմ քաղել ու փնջեր կապել,
Շնչել եմ օդդ, թարմացել հոգով:

Ինչպե՜ս կարող եմ ես քեզ մոռանալ,
Ինչպե՜ս կարող եմ քեզնից դառնանալ.
Որտե՞ղ էլ լինեմ, սիրտս քեզ հետ է,
Իմ հայրենի գյուղ, իմ ծննդավայր:

ԼՅՈՒԴՎԻԳ ՍԱՐԳՍՅԱՆ

(Արթիկի շրջանի Հնաբերդ գյուղի միջնակարգ դպրոցի աշակերտ)

## ՎԱԶԻԿԸ

Դպրոց է գնում
Վազիկը արդեն.
Փռվել է փայլուն
Ճամփան նրա դեմ:

Քայլում է, ժպտում
Գրքերը ձեռքին,
Նրան են նայում
Մայրիկն ու տատին...

Նրան են նայում՝
Փիսոն մռալով,
Փայտե ձին տրտում,
Տխուր աչքերով...

Նայում են այդպես
Լուռ ու վշտացած,
Հարցնում են կարծես՝
— Վազիկն ո՞ւր գնաց...

ՌՈՒԲԵՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

(Երևան)

# ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ՉԿԱ ԵՐՋԱՆԻԿ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Մեր Հայրենիքում սկսվեց նոր ուսումնական տարին: Նորից լայն բացվեցին հազարավոր դպրոցների դռները: Ամռան ընթացքում հանգստացած ու կազդուրված միլիոնավոր մանուկներ սկսեցին իրենց աշխատանքային նոր տարին... Բայց այդպես չէ այնտեղ, կապիտալիստական երկրներում:

Այնտեղ չկա երջանիկ մանկություն: Այնտեղի փոքրիկ քաղաքացիները հնարավորություն չունեն սովորելու և հինգ-վեց տարեկան հասակից ստիպված են աշխատել:

Ահա այդ ծանր կյանքի մասին են պատմում այն նյութերը, որ տպագրում ենք ստորև:

## ՓՈՔՐԻԿ ԲԵՌՆԱԿԻՐՆԵՐԸ

Կեղտոտ ու մռոտ դեմքերով, պատառոտված հագուստներով այդ տղաներին կարելի է հանդիպել Թյուրքիայի շատ ու շատ քաղաքներում: Դրանք բեռնակիրներ են:

...Անկարայի կենտրոնի բաղի շուկայում խուլ-զեռ է: Մուրադը, որի աչքերը նիրհանդ են տրախտ-մայով, ինչպես նրա հասակակիցներից շատերի-նը, հենել է ցածր պատին և սպասում է աշխա-տանքի: Առավոտյան դեռ ժամը ութը չկա, իսկ նա արդեն կերել է ունեցած հացի փոքրիկ կտորը: Ըն-րակից, որն ամրացված է արճճե երկար խողովա-կին, նա կուշտ ջուր է խմել: Սա է նրա նախա-ճաշը:

Թունա փողոցում երևում են երկու կին: Մու-րադը վազում է նրանց ընդառաջ: Նա հազիվ է պահում իր զամբյուղը և բղավում.



— Մորքո՛ւր, մորքո՛ւր, ես այստեղ եմ...

Պատի տակ կանգնած են Մուրադի նման մի քանի երեխա: Նրանց մերկ ոտքերը կեղտից սևա-ցել են, ձեռքերը կապտել առավոտվա ցրտից:

Փողոցները հետզհետե լցվում են շուկա շտա-պող կանանցով: Նրանցից ամեն մեկի հետևից գնում է մի բեռնակիր տղա, որի զամբյուղը շատ անգամ իրենից մեծ է: Իր աշխատանքի համար նա ստանում է 25—40 դուռուշ, իսկ հացի մեկ կիլո-գրամն արժե 80—100 դուռուշ:

Առևտուրը շուկայում վերջանում է, և այդ երե-խաները ցրվում են: Նրանք մինչև երեկո լրացուցիչ աշխատանք են փնտրում, իսկ հետո գնում են գի-շերելու, որը քանդված շենքում, որը հին բաղնի-քում, որն էլ ապրանքատար վագոնում, գլխի տակ մի խուրձ խոտ դնելով...

## ԱՅՍՊԵՍ ԵՆ ԱՊՐՈՒՄ

*Աֆրիկայի հյուսիս-արևմտյան անկյունում, Ատլանտյան օվկիանոսի և Միջերկրական ծովի ափերին տարածված է Մարոկկո պետությունը։ Քառասուն տարուց ավելի է, ինչ այստեղ թագա-վորում են օտարերկրյա կապիտալիստները։ Նրանք գյուղացիներից խլել են հողը, զավթել են բնու-թյան հարստությունները և թշվառացրել են ար-հեստավորներին։*

*Առանձնապես ծանր է երեխաների վիճակը։ Շահագործողները երեխաներին զրկել են ուսում ստանալու հնարավորությունից։ Մարոկկոյի երկու միլիոն երեխաներից հազիվ 200 հազարն են, որ դպրոց են հաճախում։ Դպրոց գնալու համար հար-կավոր է ֆրանսերեն իմանալ, որովհետև դասա-վանդումը՝ ֆրանսերեն է, իսկ մայրենի լեզուն՝ արաբերենը համարվում է օտար։*

*Մարոկկոյի ամենամեծ քաղաքներից մեկի՝ Կա-սաբլանկայի փողոցներում շատ երեխաներ կան, որոնք կմախքների նման են։ Հենց որ դուրս ես գալիս փողոց, ձեզ անմիջապես շրջապատում է փոքրիկ բեռնակիրների, կոշիկ մաքրողների, եր-*

բեմն էլ պարզապես աղքատների մի ամբողջ բազմություն։ Մանուկ հասակից երեխաները պայքարի են դուրս գալիս սովամահության դեմ։

Սարսափելի են այսպիսի կյանքի հետևանքները։

Բայց մարոկկացիները չեն հաշտվել գաղութային ժողովրդի դառն վիճակի հետ։ Նրանք կռվի են ելել իրենց հայրենիքի ազատության և անկախության համար։

## ԻՄ ՊԱՏԱՆԻ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

(Սուդանի Միացյալ արհմիությունների գլխավոր քարտուղար Աբդուլա Դիալոյի պատմածից):

Ես Աֆրիկայից եմ, Սուդան երկրից։ Սուդան նշանակում է «նեգրերի երկիր»։ Իմ հայրենիքը



զավթել են օտարերկրյա կապիտալիստները։ Դժվար է ապրում իմ երկրի ժողովուրդը։ Բայց մարդիկ չեն կորցնում հավատը լավագույն ապագայի նկատմամբ։ Պայքարն աշխատավորների իրավունքների համար քանի գնում ընդարձակվում է...

Գործադուլային մի օր ես անցնում էի Բամակո քաղաքի փողոցով և հանդիպեցի ծանոթ բանվորների երեխաներին։ Դրանք էին՝ Մամադուն, Սորին և Ցախտան։ Նրանք թռուցիկներ էին տարածում։ Ես շատ ուրախացա, որ հանդիպեցի նրանց։

Երբ պատանի հայրենասերներն իրենց գործը վերջացրին, մենք գնացինք զրուցելու։ Նրանք մեծերի պես, վրդովված խոսում էին մեր երկրի երեխաների ծանր կյանքի մասին։ Չէ՞ որ մեզ մոտ տասը երեխայից մեկն է միայն սովորում։

Վատ են ապրում երեխաները։ Նրանց ծնողները շատ քիչ փող են վաստակում, իսկ իրենց աշխատանքը գնահատվում է շատ ցածր...

## ԱՌԱՆՑ ԴՊՐՈՑՆԵՐԻ

Արևմտյան Գերմանիայում դպրոցական շենքերը շատ քիչ են: Միայն արևմտյան Բեռլինում պակասում է հազար դասարանից ավելի: Մյուս քաղաքներում և գյուղերում դասարաններն ավելի քիչ են: Օրինակ՝ Ներքին Սաքսոնիայում պակասում է մոտ յոթ հազար դպրոցական շենք, իսկ Բավարիայում ավելի քան վեց հազար:

Շատ երեխաներ էլ չեն կարող սովորել, որովհետև նրանց ծնողները հնարավորություն չունեն վճարելու ուսման համար: Ուրեմն, զարմանալի չէ, որ այնտեղ սովորում են միայն հարուստների երեխաները:

## ԳՅՈՒՂԱԿԱՆ ԴՊՐՈՑԸ

ԼՈՒԼԱ ՎԻԼՅԵԿՈՐՏԱ ԴԵ ՎԻԴԱՈՒՐՐԵ
(Գվատեմալայի ուսուցչուհի)

Այսօր չորեքշաբթի է. այդ պատճառով երեխաները ամենամաքուր հագուստները հագած, առավոտյան ժամը վեցին թափառում են ռանչոյի* շուրջը, որտեղ տեղավորված է գյուղական դպրոցը։

Պարոն քննողներն արդեն այստեղ են։ Նրանց ուղեկցում է գյուղակի կառավարիչը։ Ուսուցչուհին փայտե սեղանի վրա դասավորում է քննական տոմսերը։

Ուսուցչուհին դուրս է գալիս միջանցք ու երկաթե հաստ ձողով խփում է մի երկաթե գերանի, որը կախված է պարանից։

Զանգի ձայնը լսելով, երեխաները գնում են դասարան։ Նրանք շտապ հարդարում են գզգզված մազերը, որոնք թափված են ճակատներին և մոտենալով նրա, բարձր ձայնով ասում են.

— Բարև՛ ձեզ։

Քննությունները արագ անցան։ Երեխաները կարդում էին, գրում, հաշվում։ Նրանք իրենց փոքրիկ տախտակների վրա խնամքով նկարում էին այն, ինչ որ այդ տարվա ընթացքում ամենից ավելի խորն էր տպավորվել նրանց հիշողության մեջ։

Քննողները շնորհավորեցին ուսուցչուհուն։

— Հարկավոր է արձանագրության մեջ նշել ուսուցչուհու լավ աշխատանքը,— ասաց նրանցից մեկը։

* Ռանչո—հնդկացու խրճիթ։

— Մի՛ արեք այդ,— շշնջաց կառավարիչը, խեթևակի թեքվելով դեպի ուսուցիչները:— Մի՛ արեք,— կրկնեց նա շշուկով:— Պատրոնը* չի ուզում, որ պեոնների** երեխաները գրագիտու-



թյուն սովորեն: Եվ հենց որ տեսնում է, որ ուսուցիչը ձգտում է հաջողության, անմիջապես հեռացնում է գործից:

— Դա կարևոր չէ. աշխատանքը պետք է նշվի:

— Խե՜ղճ կին,— ավելացրեց կառավարիչը:— Նա բոլորովին հիվանդ էր, որ եկավ այստեղ. հիմա կազդուրվել է և ինչքա՜ն ուժ ունի, աշխատում է, որպեսզի մի քիչ փող վաստակի իր և որդու ապրուստի համար: Եթե դուք ուսուցչուհուն գովեք, դոն Օտտոն՝ պատրոնը, անմիջապես կհեռացնի նրան:

— Չենք կարծում, թե այդպես անի: Եվ հետո՝ վերջապես հարկավոր է այդ վայրենուն սովորեցնել գնահատել իր ենթակաների առավելությունները:

Քննությունները վերջացան, վրա հասան արձակուրդները: Մի անգամ դոն Օտտոն եկավ դպրոցը նայելու: Նա կարմրադեմ էր և հաստավիզ: Սիգարը բերանին, նա զննեց ամեն ինչ և հանկարծ հարցրեց.

— Իսկ ինչպե՞ս է ուսուցչուհին:

— Լավ է... լավ է...,— պատասխանեց կառավարիչը, աշխատելով որքան կարելի է անտարբեր խոսել:

— Հը՜մ... ես ուզում եմ տեսնել արձանագրությունը:

Նա աչքերը մոտեցրեց արձանագրությանը և ուշադրությամբ կարդաց: Ապա բարձրացրեց իր հանկարծակի կաս-կարմիր կտրած դեմքը և շշնջաց՝ «Երևում հնդկացի կարդա՜լ են սովորել...»:

Հետո բարձրաձայն հարցրեց.

— Ինչքա՞ն է ստանում ուսուցչուհին:

— Ութ պեսո* և սնունդ:

Դոն Օտտոն մի պահ մտքի մեջ ընկավ և ապա նոր հարց տվեց.

— Իսկ անցյալ տարի ո՞վ էր ուսուցիչը:

— Դոն Մունգո Գարսիան: Հիշո՞ւմ եք նրան: Նա ստանում էր 12 պեսո և սնունդ: Նա ավելի շատ օգնում էր գրասենյակի գործերին, բայց համարում էին, թե աշխատում է որպես ուսուցիչ: Երեխաները նրանից դժգոհ էին. ուսուցիչը շատ ծույլ էր և հարբեցող:

— Իսկ որտե՞ղ է նա հիմա:

— Մոտակա ինչ-որ տեղ թափառում է:

— Կանչիր նրան, թող էլի աշխատի դպրոցում. և վճարիր նրան 15 պեսո:

Արձակուրդներն անցան: Երբ ուսուցչուհին վերադարձավ աշխատանքի, նրա տեղն զբաղված էր: Մի փետրվարյան արևոտ օր** կարելի էր տեսնել, թե ինչպես ուսուցչուհին իր հիվանդ երեխայի հետ հեռանում էր գյուղակից: Նրան անհրաժեշտ էր փող վաստակել. և դրա համար էլ համաձայնեց չնչին վարձով աշխատել որպես լվացարար հարևան գյուղակում...

* Պատրոն—գյուղակի տեր:

** Պեոն—բատրակ:

* Պեսո—գվատեմալական դրամ:

** Գվատեմալայում ուսումնական տարին սկսվում է փետրվարին:

# ՎՈԼՈԴՅԱ ՈՒԼՅԱՆՈՎ*

(Հիշողություններ Վ. Ի. Լենինի մանկական և պատանեկան տարիների մասին)

Ն. ՎԵՐԵՏԵՆՆԻԿՈՎ

Նկ. Ա. ԴԱՎԻԴՈՎԱՅԻ

## ԱՄԲԱՐՏԱԿԻ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԸ

Ամբարտակ կառուցելը ծանր աշխատանք է և երկար ժամանակ է պահանջում։ Ամենից առաջ խփեցին ցցերը։ Խփում էին պարզ ու հասարակ ձեռքի գործիքով, որը կոչվում էր «Թակ» (բանակներում ծանր քոթուկ է)։ Բանվորները երգում էին «Մահակը», որի խոսքերը հանպատրաստից հորինում էր մեներգիչը։ Հաճախ լսվում էր արձագանքով կրկնվող խոսքերը.

> Փայտի ցցերը ծանծաղուտում նստեցին.
> Է՜հ, ո՞ւմ ինչ գործն է.
> Խփենք,
> Ընը՛,
> Խփենք:

Ամբարտակի շինարարությունը գրավել էր բոլորի ուշադրությունը։ Լսելով «Մահակ» երգը Վոլոդյան հաճախ կիսատ էր թողնում թեյելը և վազում դեպի ամբարտակը. այնտեղ ամեն բան նրան հետաքրքրում էր...

Հյուսն Լեոնտին համոզված կերպով ասում էր, որ այդ աշխատանքը շատ տանջալի է. ցցերը պետք է խփել ցցահարով, բայց դրա փոխարեն խփում են «Թակով»։

Վոլոդյայի այն հարցին, թե ցցեր խփելիս «Թակը» ինչպես է բարձրանում մինչև ճախարակը և հետո պոկվում ու հարվածում ցցին, Լեոնտին տվեց երկար և խառնաշփոթ բացատրություն։

Ամբարտակի վերակառուցման աշխատանքներին նայելու համար այստեղ կանգ էր առնում թե՛ սպորով ու ձիով դաշտից վերադարձող հողագործը և թե՛ Թաթարական Զերեմիշևո գյուղից եկող հնոցագործ Կարպեյը, որը նաև ձկնորսությամբ էր զբաղվում։

Վոլոդյան նրան անվանում էր տուրգենևյան տիպ, իսկ Իլյա Նիկոլայևիչը՝ փիլիսոփա։

Կարպեյը բարձրահասակ, նիհար գյուղացի էր, սև և մի քիչ սուրույիկ մորուքով։ Երկար ալեխառն մազերը երևում էին կարկանդակի տեսք ունեցող թաղիքե լայնեզր գլխարկի տակից։

Ամբարտակի մոտ երկար էր մնում նաև հրացանով անցնող հարևան Բուտիրկա գյուղացի, երիտասարդ Կուզման։ Նա գալիս էր իր որսորդական շան՝ Վալետկայի ուղեկցությամբ։

— Կուզմա՛, երևում է, որ չես կերակրում քո Վալետկային,— նախատում էին Կոկուշկինոյի գյուղացիները,— տես շունը սովից չխեղդի մեր աքաղաղին։



...Լեոնտին տվեց երկար... բացատրություն:

— Ի՞նչ է, ե՞ս պիտի շանը կերակրեմ,— առարկեց Կուզման,— թող ինքը հոգա իր մասին։

Եվ Վալետկան «հոգում էր»։ Կուզման հենց որ խփում էր Վալետկայի հետախուզած որսը, շան հետ վազում էր որսի մոտ։ Վալետկան արագ հասնում էր խփված թռչունին և անմիջապես լափում։

* Սկիզբը «Պիոներ» №№ 4, 5, 6, 7, 8։

## ՀԱՆԴԻՊՈՒՄ ԿԱԶԱՆՈՒՄ

Առանձնապես լավ եմ հիշում Վոլոդյայի այն տարվա ժամանումը, երբ նա փոխադրվել էր հինգերորդ դասարան։ Ես դեռ Կազանում էի։ Գարնանային մի գեղեցիկ երեկո նավով Կազան ժամանեցին մորաքույր Մաշան, Անեչկան և Վոլոդյան։

Վոլոդյան հուզված էր. դա կամ նավով ճամփորդելուց էր, կամ այն բանից, որ նա առաջին անգամ և փայլուն կերպով հանձնել էր բանավոր քննությունները. (ցածր դասարաններում միայն գրավոր քննություններ էին հանձնում)։

Նա ինձ առաջարկեց զբոսնել Կազանում։ Մեր ուսերին գցելով գիմնազիական վերարկուները, մենք անմիջապես դուրս վազեցինք։ Սենյակում մութ էր, և երբ փողոց դուրս եկանք, ես նկատեցի, որ Վոլոդյան վերարկուն թարս է գցել։

— Վոլո՛դյա, վերարկուդ թարս ես գցել,— ասացի ես։

— Ճիշտ որ... Բայց թող այդպես էլ մնա,— պատասխանեց նա.— ես այսօր ինչ-որ մի տեսակ եմ զգում ինձ. կարծես թե ինչ-որ մեծ, հրաշալի բան է լինելու։ Գուցե եղանակի՞ց է... իսկ դու այդպես չե՞ս զգում։

— Եղանակը խրոխ հրաշալի է։ Ես անչափ ուրախ եմ, որ դու այս տարի շուտ եկար, բայց հրաշալի բան չեմ զգում։

Ընդհակառակը, ես նույնիսկ մի քիչ ճնշված էի զգում, որովհետև ամբողջ ձմեռը տիֆով հիվանդ էի և այդ պատճառով եա մեկ տարով ետ էի ընկել։ Ես մնացել էի երրորդ դասարանում, իսկ Վոլոդյան փոխադրվել էր հինգերորդ դասարան։

— Բայց ո՞ւր գնանք,— հարցրի ես.— ուզում ես՝ ցույց տամ Վոսկրեսենսկայա փողոցը, որը մեր լավագույն փողոցն է։

Նա պատասխանեց, որ իր համար միևնույն է, և մենք գնացինք «Սև ծով» այգին։

Մենք շուտ վերադարձանք և նախապես վայելելով Կոկուշկինո ուղևորվելու հաճույքը, իմ սենյակում պառկեցինք քնելու։

Հաջորդ օրը երկու կառքով ուղևորվեցինք Կոկուշկինո։ Ես ու Վոլոդյան մեր ցանկությամբ նստել էինք կառապանների կողքին։

— Ա՛յ քեզ զվարճախո՜ս,— ասաց երիտասարդ կառապան Ռոմանը, որի կողքին նստել էր Վոլոդյան։

— Ո՞վ,— հարցրի ես։

— Քո ախպերացուն։ Նրա հետ ծանրաշարժ ձիերով անգամ չես նկատում, թե ինչպես ես տեղ հասնում։



...երկու կառքով ուղևորվեցինք Կոկուշկինո։

Այդ երիտասարդը հարևան Չերեմիշևո-Ասլանկաևո գյուղից էր։ Հետագայում մի անգամ նա ասաց.

— Արդյոք, ե՞րբ է գալու քո եղբայրը։

— Ի՞նչ կա որ։

— Դա շատ է հետաքրքրում ինձ։ Ես այդպիսի տղա դեռ չեմ տեսել։ Լավ սրախոսություններ է անում։

Չնայած ես նրանից ձեռք չէի քաշում, բայց և այնպես Ռոմանը չկարողացավ մանրամասնորեն ու կապակցված շարադրել Վոլոդյայի ասած խոսքերը։

— Մի՞թե կարող ես հիշել,— հրաժարվեց նա։ Եվ նրա կլոր երեսը դոհ ժպիտից ավելի լայնացավ։

## 1887 ԹՎԱԿԱՆԸ

1887 թվականի գարնանը, երբ Վոլոդյան ավարտել էր գիմնազիան, Պետերբուրգում ձերբակալվեց Ալեքսանդր Իլյիչը՝ Ալեքսանդր III ցարի դեմ

կազմակերպված մահափորձին մասնակցելու համար։ Ձերբակալվեց նաև Աննա Իլյինիչնան։ Քույրս՝ Կատյան, որն այն ժամանակ ապրում էր Պետերբուրգում, այդ մասին նամակ գրեց Սիմբիրսկ՝ խնդրելով ծանոթ ուսուցչուհի Վերա Վասիլևնա Կաշկադամովային նախապատրաստել մորաքույր Մաշային և զգուշորեն հայտնել այդ ծանր լուրը։ Իլյա Նիկոլայևիչն այդ ժամանակ կենդանի չէր. նա մեռել էր դրանից մեկ տարի առաջ։

Ստացված նամակի մասին Վերա Վասիլևնան առաջինը Վոլոդյային հայտնեց։

Այդ ժամանակվանից Վոլոդյայի կյանքում բեկում տեղի ունեցավ։

Մորաքույր Մաշան մեկնեց Պետերբուրգ, իսկ Վոլոդյան մնաց ընտանիքի ավագը։

Մարիա Իլյինիչնան հաճախ էր հիշում, թե Վոլոդյան ինչքա՜ն հոգատար և ուշադիր է եղել իր, փոքր քրոջ ու եղբոր նկատմամբ։ Մարիան հիշում էր, որ երեխաներին տեսնելու համար այդ ծանր օրերին առաջին իսկ նավով Սիմբիրսկ է ժամանել իր մայրը։

Ալեքսանդր Իլյիչը ճանաչվել էր որպես մահափորձի ղեկավարներից մեկը և դատապարտվեց մահվան։ Նա մահապատժի ենթարկվեց 1887 թվականի մայիսի ութին։

Այդ ծանր օրերին Վոլոդյան իրեն չկորցրեց. նա անընդհատ պարապում էր և փայլուն կերպով հանձնեց հասունության վկայականի քննությունները։ Միաժամանակ չէր մոռանում քաջալերել ու զբաղեցնել փոքրերին։

Երևակայո՞ւմ եք, թե ինչպիսի՜ բարոյական ուժ պետք է ունենա տասնյոթ տարեկան տղան, որպեսզի նման հանգամանքներում կարողանա այդպես տոկուն կերպով կրել այդ խոր վշտի ու դժբախտության ամբողջ ծանրությունը։

Վոլոդյան Սիմբիրսկի գիմնազիան ավարտեց ոսկե մեդալով, թեև գիմնազիայի մանկավարժական խորհուրդը տատանվում էր և քննարկեց այն հարցը, թե կարելի՞ է արդյոք այդպիսի պարգև տալ Վոլոդյային։ Այդ ժամանակ Սիմբիրսկի գիմնազիային մեղադրում էին այն բանում, որ նա դաստիարակել և ոսկե մեդալով է պարգևատրել «պետական հանցագործին», այսինքն ինքնակալության կողմից մահապատժի ենթարկված Ալեքսանդր Իլյիչին։

Սակայն Վոլոդյային զրկել ոսկե մեդալից, նրա փայլուն հաջողությունների առկայության դեպքում, նույնիսկ այն ժամանակվա մանկավարժական խորհուրդը չկարողացավ։

# ՖԱԿՈՒԼՏԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆԸ

1887 թվականի ամռանը Ուլյանովների ամբողջ ընտանիքը շուտ ժամանեց Կոկուշկինո։ Աննա Իլյինիչնան, ինչպես ես ասել էի վերևում, այդ ժամանակ գտնվում էր ոստիկանության հսկողության տակ։

Ամենից ուշ Կոկուշկինո եկավ Վոլոդյան։

Ամենավաղ մանկությունից սկսած յուրաքանչյուր ամառ ես տեսնում էի Վոլոդյային, և նրա ֆիզիկական ու բարոյական փոփոխությունները քիչ էին նկատվում. բայց անցած ձմռան ընթացքում Վոլոդյան խիստ փոխվել էր, դարձել էր զուսպ, հազվադեպ դեպքում էր ծիծաղում, քիչ էր խոսում. պարզ ասած մեծացել էր։ Նա միանգամից հասունացավ և դարձավ լուրջ մարդ։ Բայց արտաքինով մնացել էր այնպես, ինչպես առաջ էր։

Վոլոդյայի լրջությունը խորն էր, ներքին, և բոլորովին շինծու չէր։ Վոլոդյայի լրջության մեջ չկար ո՛չ մռայլություն և ո՛չ էլ վհատություն։ Նրա մոտ երևան էր եկել զսպվածություն, ես կասեի գիտակցական, կամային ինքնամփոփություն, որ առաջ չէր նկատվում։ Առանձնապես պարզորոշ էր երևան գալիս նրա ծաղրը, որ մերթ արտահայտվում էր միայն հայացքում, երբ կողքից էր նայում՝ թեթևակի կկոցելով աչքերը, մերթ էլ շրջուն նախադասությունների մեջ։ Գռեհիկ կամ անհամ խոսքեր ասող մարդուն նա հաճախ ուղղում էր մի արտահայտություն, որ ես երբեք չեմ մոռանա. «Ճիշտ դատողությունը դուք կարողացեք ձեր մտքում շարադրել»— ասում էր նա։

Այս դարձվածքը Վոլոդյան գործածում էր այն ժամանակ, երբ չէր ուզում լրջորեն առարկել կամ անհրաժեշտ էր համարում նշել անմտությունը։

Վոլոդյան որոշեց ընդունվել Կազանի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը։ Մայրաքաղաքի համալսարանների մուտքը նրա համար փակ էր։ Ես շատ զարմացած և հիասթափված էի այն բանից, որ նա ընտրեց այդ ֆակուլտետը։ Ինձ թվում էր, որ իրավաբանական գիտությունները անչափ ցածր էին բնական գիտություններից։ Այդ կարծիքն այն ժամանակ բավական տարածված էր։ Եվ իրավաբանական ֆակուլտետ հաճախ գնում էին պատանիներ, որոնք հակում չունեին դեպի գիտության ոչ մի բնագավառ։

Հիշում եմ, այդ ամռանը Կոկուշկինո եկավ Կազանի համալսարանի մաթեմատիկական ֆիզիկայի դասախոս Գ. Ն. Շեբուևը։ Նա երկար, շատ երկար ժամանակ զրուցում էր այգում և զրուցում Վոլոդյայի հետ։ Ես չգիտեի, թե ինչի մասին էին

խոսում նրանք, բայց հետո իմացա, որ Շեբուևը բազմիցս հիացմունքով հավատացրել էր, որ Վլադիմիր Իլյիչը անպայման պետք է ընդունվի մաթեմատիկական ֆակուլտետ։ Նա ասել էր, որ Վոլոդյայի «խելքը մաթեմատիկական որոշակի զինանոց է»։ Իսկ Սիմբիրսկի գիմնազիայի ռուս և հին լեզուների դասատուները գտնում էին, որ Վլադիմիր Իլյիչը անպայման պետք է ընդունվի բանասիրական ֆակուլտետ։ Իմ այն հարցին, թե ինչու նա ընտրեց իրավաբանական ֆակուլտետը և ոչ թե մեկ ուրիշը, ասենք մաթեմատիկականը, կամ բնագիտականը, նա ասաց.

— Այժմ այնպիսի ժամանակ է, որ հարկավոր է ուսումնասիրել իրավունքի և քաղաքատնտեսության գիտությունները։ Կարող էր պատահել, որ մի այլ ժամանակ ես ընտրեի ուրիշ գիտություններ։

## ԱՌԱՋԻՆ ԱՔՍՈՐԸ

Ուսումնական տարվա նախօրյակին մորաքույր Մաշան ընտանիքով Կոկուշկինոյից տեղափոխվեց Կազան։

Վոլոդյան գրանցվեց Կազանի համալսարանի իրավաբանական ֆակուլտետում։

1887 թվականի մարտի մեկի մահափորձից հետո, որին ուսանողներ էին մասնակցել, ցարական կառավարությունը, ավելի քան երբևիցե, սկսեց նեղել ուսանողությանը։ Շատերին հեռացնում էին համալսարանից, ձերբակալում, աքսորում։ Բոլոր համալսարաններում ուսանողները բողոք էին արտահայտում ճնշող հասարակարգի դեմ։ Այդ բողոքներն այն ժամանակ անվանում էին «ուսանողական հուզումներ»։

Վոլոդյան եռանդուն մասնակցություն էր հանդես բերում ուսանողական ռևոլյուցիոն այդ շարժումներին։

Դեկտեմբերին նա ձերբակալվեց, հեռացվեց համալսարանից և այն ժամանակվա վարչական տերմինով ասած՝ արտաքսվեց «ծննդավայրը» — Կոկուշկինո գյուղը, որտեղ ապրել ու մահացել էր նրա պապը։

Վոլոդյան բնակվում էր ֆլիգելում և զբաղեցնում էր անկյունի սենյակը, որի լուսամուտները նայում էին դեպի հյուսիս։ Հարավային սենյակում ապրում էր Աննա Իլյինիչնան։

Վոլոդյայի սենյակը ուներ ամենահասարակ կահավորություն. փայտե մահճակալ, պատին՝ գրքերի դարակ, հասարակ պահարան, երկու-երեք նստարան, ծալովի աթոռ, սեղան։ Դռան մոտ դրված էր հյուսնի մի դազգահ, որն ուզում էին դուրս տանել, բայց Վոլոդյան չէր թողել, ասելով, որ նրա վրա կարելի է գրքեր դարսել։

Հետո, գարնանամուտին, նույն սենյակում Վոլոդյայի հետ ապրում էր նաև նրա փոքր եղբայրը՝ Միտյան։

Ամենավաղ մանկությունից Վոլոդյան շփվում էր գյուղացիների հետ։ Երբ նա աքսորված էր, բոլոր գյուղացիները ջերմ ու լավ էին վերաբերվում նրան։

Վոլոդյան ապրում էր մեկուսացած և ժամանակի մեծ մասն անցկացնում էր գրքեր կարդալով, որոնք ձեռք էին բերվում Կազանում։

Նրան քիչ էին այցելում, որովհետև ձմռանը Կազանից Կոկուշկինո գնալու համար, և այն էլ բարեհաջող պայմաններում, անհրաժեշտ էր հինգ-վեց ժամ։

Թանձր ձյունով ծածկված դաշտերով ձգվում էր նեղ ճանապարհը, որով դժվարությամբ կարելի էր գնալ մի ձիով, իսկ երկու ձիով գնալու դեպքում դրանք լծում էին մեկը մյուսի հետևից։ Բուք ու բորանի ժամանակ ճանապարհը փակվում էր։ Եթե ճանապարհը կորցնեիր, մի քանի ժամ մոլորված պետք է թափառեիր ամայի վայրում։

Այն շենքը, որտեղ աքսորված ժամանակ ապրել է Վլադիմիր Իլյիչը, այժմ վերակառուցված է։ Վլադիմիր Իլյիչի սենյակում բոլոր իրերը հնարավորին չափ վերականգնված են այնպես, ինչպես եղել էին այն ժամանակ։

Կոկուշկինո գյուղն այժմ կոչվում է Լենինո։

## ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆ ԿԱԶԱՆՈՒՄ

1888 թվականի աշնանը Վոլոդյային և Անեչկային թույլ տրվեց ապրելու Կազանում, բայց Վոլոդյային համալսարան չընդունեցին։

Մորաքույր Մաշան բնակարան վարձեց Օրլովի տանը, Առաջին Սար փողոցում։

Երկհարկանի տունը կանգնած էր քարափի վրա և երևում էր բոլոր կողմերից։ Այդ տանն այժմ տեղավորված է Վ. Ի. Լենինի թանգարանը, իսկ Առաջին Սար փողոցը կոչվում է Լենինի անվան։

Վոլոդյան այդ բնակարանի ներքևի հարկում իր համար մի փոքր սենյակ ընտրեց։

Նա ուսանողական կապույտ, բարձրադիր օձիքով սերթուկն ու համազգեստը փոխարինեց քաղաքացիական շորերով։ Վոլոդյան հագնում էր մուգ գույնի բաճկոն, ժիլետ և ծալվող օձիքով վերնաշապիկ։ Փողկապի փոխարեն կապում էր ծոպավոր ժապավեն, ինչպես կապում էին այն ժամանակ։

Վոլոդյան այստեղ էլ շատ էր պարապում։ Նրա միակ զվարճությունն այդ ժամանակ շախմատն էր։ Նա ուժեղ խաղացող էր և գրագրությամբ (այսինքն՝ քայլերը նամակներով միմյանց հայտնելով) խաղում էր հայտնի շախմատիստ Խարդինի հետ. իսկ Խարդինը մրցում էր նույնիսկ շախմատի չեմպիոն Չիգորինի հետ։ Երբեմն Վոլոդյան լինում էր նաև շախմատային ակումբում։

1889 թվականի գարնանը Ուլյանովների ընտանիքը փոխադրվեց Ալակաևկա կալվածքը, որը Սամարայից հիսուն կիլոմետր հեռու էր։

Այնտեղ վերջապես Վոլոդյան թույլտվություն ստացավ էքստերն հանձնելու Պետերբուրգի համալսարանի քննությունները։ Ընդամենը մեկ ու կես, երկու տարվա ընթացքում Վոլոդյան ինքնուրույն կերպով պատրաստվեց և իր գիմնազիստ ընկերների հետ հանձնեց իրավաբանական ֆակուլտետի քննությունները, ու չկորցրեց և ոչ մի տարի։

Այդ տարիներին Վլադիմիր Իլյիչն սկսեց ուսումնասիրել Կարլ Մարքսի ուսմունքը և բռնեց ռևոլյուցիայի ուղին։

Վլադիմիր Իլյիչն իր ամբողջ կյանքը տվեց ռևոլյուցիոն պայքարին, ժողովրդի ազատության ու երջանկության համար։

Մեր հզոր կառավարությունը և հարազատ Կոմունիստական պարտիան կատարելով Լենինի պատգամները, ամրապնդելով ժողովուրդների բարեկամությունը և պայքարելով խաղաղության համար ամբողջ աշխարհում, անշեղորեն մեզ առաջ են տանում դեպի կոմունիզմի գագաթները։

Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



## ԵՐԳ ՏԱՆԿԻՍՏԻ ՄԱՍԻՆ

*Հ. ՍԱՀՅԱՆ*

Հայրենական կռվում
Հայրս տանկ է վարել.
Հայրենական կռվում
Հաղթանակ է տարել:

Ամրացել են արկի
Եվ գնդակի առաջ
Հայրենական տանկի
Զրահները կանաչ:

Հայրենական տանկի
Թրթուրների հետքով
Գարուններն են անցել
Հաղթանակի երգով:

Հայրս հիմա՝ վայրի
Խոպաններն է վարում,—
Արդեն երկու տարի
Տրակտոր է վարում:

Վաղուց նրա տանկի
Հրանոթն է լռել:
Նրա փողն է ներմակ
Ծաղկոցի մեջ դրել:

Սարսափում են բոլոր
Ոսոխները հիմա
Անգամ այսօրվա խոր
Լռությունից նրա:

## ԱՌԱՋԻՆ ՀԻՆԳԸ

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Օրագիրն ուսախ
Բռնել է ձեռքին,
Կանգնել է Աշոտն
Իրենց տան շեմքին:
Սպասում է նա,
Որ մայրիկը գա,
Առաջին «հինգը»
Մայրիկին ցույց տա...

# ՆԱ ԱՐԺԱՆԻ Է

*Ծ. ՇԱՂԳԱՄՅԱՆ*

Սեպտեմբերի վեցն է: Պերճուհին դպրոցից վերադառնում է տուն:

— Ինչո՞ւ ուշացար,— տեսնելով աղջկա մտախոհ դեմքը, հարցնում է մայրը:

— Մայրի՛կ, դու գիտե՞ս, թե ինչ բան է օղակավարը,— պինդ բռնելով մոր երկու ձեռքից, սեվորակ աչքերը լայն բացած, հարցնում է Պերճուհին:

— Ի՞նչ է, քեզ օղակավա՞ր են ընտրել:

— Ընտրել են, այո:

— Դրա համար պետք է ուրախանալ, իսկ դու...

— Ես ուրախ եմ, շատ ուրախ. բայց կարո՞ղ եմ ինձ արդարացնել: Չէ՞ որ օղակավարը տասը հոգու ղեկավար է: Ընկերներս խոստացել են ինձ օգնել: Նրանք այնքան լավն են:

Եվ ահա նա իր մեջ աշխատելու, կազմակերպելու ուժ է զգում: Պերճուհին փոքրիկ Ռիդայի հետ միասին պատրաստում է օղակավարի տարբերանշանը:

— Ախ, ի՜նչ չարաճճին ես, Ռի՛դա, այդ կարմիր կտորը մի՛ կտրատիր: Մեզ մոտ երեք օղակավար կա, կարող է նրանց էլ պետք գալ:



Օղակավարի տարբերանշանը պատրաստ է: Պերճուհին այն իսկույն ամրացնում է իր դպրոցական համազգեստի ձախ թևին:

— Ինչո՞ւ մեկը, լավ չի՞ երկուսը, երեքը. մի հատ էլ կրծքիդ փակցրու,— մանկական միամտությամբ ասում է Ռիդան:

— Ռի՛դա, դու դեռ փոքր ես, չես հասկանում: Ուզո՞ւմ ես քեզ ամեն ինչ պատմեմ:

— Պատմիր:

Պերճուհին ոգևորված սկսում է.

— Երբ որևէ մեկը այսպիսի շերտիկ է կրում, նշանակում է նա օղակավար է, երբ երկուսն է կրում՝ ջոկատի խորհրդի նախագահ է: Իսկ դրուժինայի խորհրդի նախագահը երեք շերտիկ է կրում:

Պերճուհին ոգևորված շարունակում է պատմել, որ իրենք որոշել են հետաքրքրական հավաքույթներ, զրույցներ կազմակերպել:

***

Օղակի առաջին հավաքույթն է: Սուրիկը թվաբանությունից երկուս է ստացել: Դա մտահոգել է բոլորին: Հավաքույթի թեման է՝ «Բարձր պահիր օղակի պատիվը»: Ելույթ են ունենում Աստղիկը, Հակոբը, Արմենը: Նրանք խոսում են հերոս պիոներների մասին, կոլեկտիվի մասին...

— Մեկը պետք է աշխատի բոլորի համար, բոլորը՝ մեկի,— ասում է Պերճուհին:

Ձայն են տալիս նաև Սուրիկին: Նրա ելույթից օղակը գալիս է այն եզրակացության, որ Սուրիկը ոչ թե ծուլանում է, այլ թվաբանությունը դժվար է հասկանում: Որոշում են ընկերական օգնություն կազմակերպել: Արմենը խոստանում է պարապել Սուրիկի հետ: Օղակը երկրորդ քառորդը փակում է առանց «2» գնահատականի: Պիոներները Պերճուհու հետ միասին սկսում են պայքարել երեքների դեմ: Նրանք բազմաթիվ խաղեր, երգեր, պարեր են սովորում, բարձրաձայն ընթերցանություններ կազմակերպում, զբոսանքի գնում: Անցնում են քառորդներ: Պերճուհուն որպես լավ օղակավարի խրախուսում են դրուժինայի պատի թերթում:

Դա երկու տարի առաջ էր:

***

Սեպտեմբերի տասնհինգն էր: Ջոկատը հավաքվել է պիոներական սենյակում: Երեխաներից ոմանք ծաղկեփնջեր են պատրաստում, ոմանք էլ նոր էքսպոնատներով հարստացնում են նախօրոք կազմակերպված ցուցահանդեսը: Պատրաստ է նաև պատի թերթի առաջին համարը, որը աչքի է ընկ-

նում իր գեղեցիկ ձևավորմամբ։ Ջոկատի ընտրական հավաքույթը դեռ չի սկսվել։ Պիոներները տաք-տաք վիճում են։

— Պետք է ընտրել արժանավորներից- արժանավորին,— ասում է էմման։

Հավաքույթը սկսվում է։ Ջոկատի խորհրդի նախագահը խոսում է անցյալ տարվա կազմակերպած հավաքույթների, զրույցների մասին, առանձին օղակների աշխատանքների մասին։

— Առաջին օղակը լիովին արդարացրել է իրեն։ Պերճուհին լավ է աշխատել,— ասում է նա։

Պերճուհու օղակի մասին գովասանքով են խոսում նաև ելույթ ունեցող պիոներները։ Այնուհետև նրանք ջոկատի խորհրդի նոր կազմի համար թեկնածուներ են առաջադրում։ Ցուցակում առաջինը գրվում է Պերճուհու անունը։ Ընկերները լիովին վստահում են նրան։ Նրանք միաձայն ջոկատի խորհրդի նախագահ են ընտրում ամենաարժանավորին։ Պերճուհու աչ թևը զարդարվում է երկու կարմիր շերտիկով։

* * *

Անցնում է մի տարի։ Սեպտեմբերի քսանհինգն է։ Դպրոցում տոն է։ Գալիս են օղակներով, ջոկատներով, հավաքվում են դահլիճում՝ մասնակցելու դրուժինայի հաշվետու-ընտրական հավաքույթին։

— Երկրորդ ջոկատն առանց «2» գնահատականի փոխադրվեց հաջորդ դասարան,— ասում է դրուժինայի խորհրդի նախագահը։— Այդ ջոկատը դրուժինայի պարծանքն է։

Նա մեծ գովասանքով է խոսում նաև Պերճուհու մասին։

Ընկերներն այս անգամ ևս Պերճուհուն վստահորեն առաջադրում են դրուժինայի խորհրդի կազմում։ Խորհուրդը նրան նախագահ է ընտրում։ Պերճուհու թևի երկու կարմիր շերտիկին ավելանում է երրորդը։

Նա արժանի է դրան։

# ՄԵԾ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

*Ա. ՄԱՆԴԱԼՅԱՆ*

*Ամբողջ օրը Յուրին տխուր էր. քիչ էր խոսում, ինքնամփոփ նստում էր դասարանի վերջին նստարաններից մեկին։*

*— Յո՛ւրի, այսօր բնագիտական խմբակի պարապմունք է, կգա՞ս,— հարցրեց ընկերոջը Վլադիմիր Տոլկալովը։*

*— Ոչ։*

*— Ինչո՞ւ, ի՞նչ է պատահել. ախր թեման լավն է՝ «Ինչպես օգնել հայրենի գյուղի կոլտնտեսությանը»,— համոզում էր նա Յուրիին, սակայն իզուր։*

*Երեկոյան դպրոց գնալիս Վլադիմիրը մտավ Յուրիենց տան բակը և կանչեց ընկերոջը, սակայն նա չերևաց։ Վլադիմիրը դուռը բացեց և ներս մտավ ընդարձակ սենյակը։*

*Նա շատ զարմացավ, երբ պատուհանի մոտ դրված մահճակալի վրա տեսավ պառկած Յուրիի մորը՝ Մարիա Նիկոլայևնային։*

*— Յուրին ո՞ւր է,— բարևելուց հետո հարցրեց Վլադիմիրը։*

*— Ֆերմա գնաց, ասում է՝ մայրիկ, մի՛ անհանգստանա, քեզ այնտեղ կփոխարինեմ։ Բայց դե ինքը մենակ ի՞նչ կարող է անել նորածինների հետ. քիչ էլ չեն՝ երեսունից ավելի են։*

*Վլադիմիրը տնից դուրս եկավ և շտապեց դպրոց։*

*— Լսեք, Յուրիի մայրը հիվանդ է, ինքն էլ ֆերմա է գնացել հորթերին նայելու,— մտնելով դասարան հևիհև խոսեց նա.— գուցե ա՞յդ էր պատճառը, որ այսօր առավոտվանից տխուր էր։*

*Բոլորը մի պահ լռեցին։*

*— Իսկ ինչ կլինի, եթե պարապմունքի փոխարեն ուղղակի ֆերմա գնանք և օգնենք հիվանդ հորթերին խնամելու,— լռությունը խզում է կապուտաչյա Գալյա Պրեսնյակովան։*

*— Ճիշտ է, Գալյան ճիշտ է ասում,— այս ու այն կողմից աղմկեցին Դուսյա Սուլիմինովը, Թամարա Մատեյկան, Յուրի Մայբորոդան և մյուսները։*

*Քիչ անց ամբողջ ջոկատը դուրս եկավ դպրոցից և ուղևորվեց դեպի անասնապահական ֆերմա։*

*Հեռու չեն Կիրովի անվան կոլտնտեսության ֆերմաները, ընդամենը մի կիլոմետր էլ չի լինի այնտեղից մինչև Պավլոդարի Եֆրեմովկայի մեքենա-տրակտորային կայանը։*

*Ընդարձակ բակում երեխաները նկատեցին Յուրիին, որը դժվարությամբ պահում էր հորթին,*

իսկ վիրաբույժ Անտոն Մինայիչը դեղ էր դնում հորթի մեջքի լայն բացված վերքին։

— Ինչ լավ է, որ եկաք. թե չէ այս անիրավը Յուրիին հանգիստ չի թողնում. քաշում է մերթ այս, մերթ այն կողմը,— ուրախացած խոսեց Անտոն Մինայիչը։



— Օհո, սա իսկական բաղնիք է...

— Մենք քեզ կօգնենք, Յո՛ւրի,— իր ամուր ձեռքերով գրկելով հորթի պարանոցը ասաց Դուսյուն Սուլիմինովը։

— Օ՛յ, չալի՛կս, ինչ ես համառում. հանգիստ մնա, թե չէ վերքդ չի բուժվի,— սպիտակաճակատ հորթին է փարվում Գալյան։

— Այսօր Մարիա Նիկոլայեվնան հիվանդ է. ոչ մի հորթի չենք լողացրել,— ավելացնում է անասնաբույժը և խորամանկ ժպիտով նայում պիոներների կողմը։

— Մենք կփոխարինենք Մարիա Նիկոլայեվնային,— ասում է Յուրի Մայրորդան։

— Ինչու չէ, կարելի է...

Քիչ անց ֆերմայի բակում ջրով լի տակառների մոտ պիոներներն սկսեցին լողացնել հորթերին։ Իհարկե, արևի տակ լողանալը հաճելի էր նրանց համար, և բոլոր հորթերն էլ չարաճճիորեն վազվզում, ցատկոտում էին։ Այ թե ուրախ տեսարան էր. բոլորը ծիծաղից թուլացել էին։

— Օհո, սա իսկական բաղնիք է,— կատակում է քեռի Իգնատը, որի մորուքը գրեթե գոտկին է հասնում և նա նման է իսկական ձմեռ պապի։
— Եթե ամռանը լավ նայեք սրանց, ամբողջ Պավլոդարում այսպիսի հորթեր չեք գտնի։

* * *

Անցան օրեր։ Պավլոդարի մարզի Եֆրեմովկայի դպրոցականները երկրորդ տարին է, ինչ վերցրել են Կիրովի անվան կոլտնտեսության ֆերմաների շեֆությունը։ Նրանք ամեն օր դասերից հետո լինում են ֆերմաներում, լողացնում, կերակրում հորթերին և հետևում, որ գոմում նրանց տեղը միշտ էլ մաքուր լինի։ Եվ հորթերը շատ արագ են աճում։

Դեռևս անցյալ տարի կոմերիտմիության մարզային կոմիտեն պատանի անասնապահներից Յուրի Մայրորդային, Արկադի Մազոլևսկուն, Գալյա Պրեսնյակովային, Թամարա Մատեյկային, Դուսյուն Սուլիմինովին և մյուսներին պարգևատրեց պատվոգրերով և արժեքավոր նվերներով։

* * *

Ընդարձակ է ու անծայրածիր Պավլոդարի մարզը։ Հողային մեծ տարածություններ ունի նաև մարզի Կիրովի անվան կոլտնտեսությունը։ Գիտե՞ք, թե որքա՜ն մեծ են այստեղի ձիերի երամակները, կովերի նախիրներն ու ոչխարի հոտը։

Ահա ձիաբուծական ֆերման։ Ընդարձակ հրապարակում է գտնվում ձիավարժարանը։ Առավոտից մինչև երեկո այստեղ ձիեր են վարժեցնում։ Ֆերմայի միայն նորածին զամբիկների թիվը չորսհարյուրի է հասնում։

Դուսյուն Սուլիմինովը ամեն անգամ գյուղամիջյան ճանապարհով տուն գնալիս, անցնում էր ֆերմայի կողքով և միշտ ժամանակ էր գտնում ձիերի երամակով հիանալու համար։

Մի օր էլ նա դպրոցի ճամփին Վլադիմիր Տուկալովին ասաց.

— Լսիր, Վլադիմի՛ր, ինչ կլինի, եթե մեր ջոկատը վերցնի նաև ձիաբուծական ֆերմայի շեֆությունը. մի տես ի՜նչ ձիեր են...

Այդպես էլ արեցին։ Մի քանի օր հետո ֆերմա եկան նաև Կալիմ Արաղալինովը, Պետկա Դուրովը և մյուսները։ Ամեն օր նրանք զամբիկներին կերակրում էին, ջրում, մաքրում նրանց տեղը և հետևում, որ նրանցից ոչ մեկը չհիվանդանա։ Տղաները հաճախ էին ջահել ձիերի վրա նստած սլանում տափաստանով. սլանում էին այնքան հեռու, որ ֆերման գրեթե ծածկվում էր աչքից։

Անցյալ տարի մարզային հավաքի ժամանակ պատանի ձիաբույծները նվաճեցին առաջին տեղը։ Նրանք հայտնի են նաև իբրև լավ ձիավարներ։ Դպրոցում էլ լավ են սովորում։

— Բոլոր առարկաներից միայն «4» և «5» գնահատական ունեմ,— ասում է Յուրի Վյատկինը, որն այս տարի փոխադրվել է յոթերորդ դասարան։

Եֆրեմովկայում ուսման առաջավորներ են նաև Վլադիմիր Տուկալովը, Յուրի Մայբորոդան, Գալյա Պրեսնյակովան, Դուսուն Սուլեյմինովը, Լիդա Հասանովան և մյուսները։

***

Տարեվերջի փոխադրական քննությունները վերջանալու վրա էին։ Պավլոդարի շրջանի Եֆրեմովկա գյուղի պատանի անասնաբույծների ուրախությանը չափ չկար։ Նրանք պատրաստվում էին մեկնելու Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդես՝ ցուցադրելու ֆերմաներում աճեցրած հարյուրավոր հորթերին ու զամբիկներին, պատմելու ցուցահանդեսի այցելուներին այն մասին, թե որքան մեծ օգնություն կարող են ցույց տալ պատանի պիոներները հայրենի կոլտնտեսության ֆերմաներին։

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՐԾՔԱՆՇԱՆՆԵՐԸ










Պատանի տուրիստների խմբակը պատրաստվում էր հերթական արշավի՝ Երևան—Ստեփանավան—Ալավերդի—Երևան մարշրուտով։ Ագնեսան և Աշոտը ուշադրություն էին դարձնում հատկապես այն ընկերների ուսուցմանը, որոնք առաջին անգամ էին մասնակցելու հեռավոր արշավին։

Ընկերները ծիծաղեցին, երբ Աշոտը պատմեց, թե ինչպես էր Ռիման անցյալ ամռանը Գառնիում վախեցել։ Նա մթության մեջ ժայռի դուրս ցցված մասը գայլի տեղ էր ընդունել։

— Իսկ դուք վաղո՞ւց եք պարապում խմբակում,— հարցրեց Հակոբը։

— Ագնեսա Պողոսյանը և Աշոտ Հովհաննիսյանը տուրիզմի սիրահարներ են։ Նրանք «ՍՍՌՄ տուրիստ» կրծքանշանակիրներ են, իսկ օրերս կստանան նաև «Պատանի տուրիստ» կրծքանշան,— պատասխանեց խմբակի ղեկավար Գ. Գևորգյանը։

— Իսկ ինչպե՞ս կարելի է կարգային դառնալ և կրծքանշանի արժանանալ,— հարցրեց Թամարը։

Խմբակի ղեկավարը նկատելով նորեկ տուրիստների հետաքրքրությունը, սկսեց իր զրույցը պիոներական կրծքանշանների մասին։

— ՀամԼԿԵՄ 12-րդ համագումարում որոշվեց՝ պիոներական աշխատանքի առանձին ձևերում ձեռք բերած նվաճումների համար մտցնել պիոներական կրծքանշաններ՝ «Պատանի տուրիստ», «Պատանի տեխնիկ» և «Պատանի բնասեր»։ «Պատանի տուրիստ» կրծքանշանով դրուժինայի խորհուրդը պարգևատրում է 5—7-րդ դասարանների այն պիոներներին, որոնք մասնակցել են հայրենի երկրում կատարված տուրիստական արշավներին։

— Հարկավոր է, որ պատանի տուրիստը գիտենա երթևեկության կանոնները, ճանապարհային և տեղագրական նշանները։ Նա պետք է կարողանա առաջին օգնություն ցույց տալ և կերակուր պատրաստել, վրան խփել, խարույկ վառել և շատ այլ բաներ, որոնք դուք կսովորեք խմբակում։

Երեխաները լուռ լսում էին և մտածում այն օրվա մասին, երբ իրենք էլ կրծքանշան կրելու պատվին կարժանանան։

— Իսկ մյուս կրծքանշանը ինչի՞ համար է

տրվում,— ցույց տալով «Պատանի տեխնիկ» կրծքանշանը՝ հարցրեց Ռուբիկը։

— Դա տրվում է այն պիոներին, որը մենակ կամ ընկերների հետ միասին դպրոցում, պիոներական պալատում, պատանի տեխնիկների կայանում են պարապում։ Նրանցից շատերը մեքենայի մոդել են պատրաստում, մասնակցում են դպրոցի, մանկատան, կոլտնտեսության ռադիոֆիկացմանը։ Դրուժինայի խորհուրդը կրծքանշան է շնորհում նաև նրանց, ովքեր լավ են ուսումնասիրել ավտոմեքենայի, մոտոցիկլետի, տրակտորի, կոմբայնի, ռադիոընդունիչի, շարժացանի, կինոապարատի, էլեկտրաշարժիչի կառուցվածքը։

— Այ, դա հասկանում եմ. արժե այդ կրծքանշանի համար պայքարել,— ոգևորված խոսեց Գառնիկը։

— Պիոներական մյուս՝ «Պատանի բնասեր» կրծքանշանը սահմանվել է այն պիոներների համար, ովքեր ակտիվ աշխատանք են կատարում ուսումնա-փորձնական հողամասերում, պայքարում են այգիների վնասատուների դեմ, խնամում են օգտակար թռչուններին, ծառեր են տնկում ու պատվաստում, ակտիվորեն մասնակցում բնագիտական խմբակի աշխատանքներին։

Այստեղ էլ շատ գործ կա կատարելու։ Պատանի բնասերները սովորում են օգտվել օդերևութաբանական պարզ գործիքներից, կոլեկցիաներ ու հերբարիումներ են պատրաստում հարազատ դպրոցի համար, խնամում են մատղաշներին։ Բայց կրծքանշան ստանալու համար մի անխախտ պայման կա՝ առաջավոր լինել ուսման մեջ։

Կրծքանշանը փակցվում է կրծքի աջ կողմը։ Բացի դրուժինայի խորհրդից, կրծքանշան շնորհել կարող են արտադպրոցական մանկական հիմնարկների (Պիոներների պալատ, Պատանի տեխնիկների կայան, Պատանի բնասերների կայան, էքսկուրսիոն-տուրիստական բազա և այլն) ղեկավարները։

Մերձքաղաքային և քաղաքային պիոներական ճամբարի դրուժինայի խորհրդի որոշմամբ, կրծքանշանը հանձնում են ավագ ջոկատավարը կամ դրուժինայի խորհրդի նախագահը։

Կրծքանշան ստանալը մեծ պատիվ է յուրաքանչյուր պատանի լենինյանի համար։

Վ. ԲԱՐԱԽԱՆՅԱՆ

(Պիոներների պալատի դիրեկտոր)

# ՀԵՌԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

Պ. Ի. ՍԿՐԻՊԿԻՆ

*(Գվարդիայի փոխ-գնդապետ)*

1945 թվականի մայիսին էր։ Մի քանի օր առաջ էին պայթել պատերազմի վերջին արկերն ու ականները, լռել էր տանկերի ու ինքնաթիռների խլացնող ձայնը։

Գերմանական ֆաշիզմի դեմ Սովետական Միության տարած հաղթանակը խաղաղություն բերեց մեր ժողովրդին։ Գործարաններում, ֆաբրիկաներում ու կոլտնտեսային դաշտերում հնչեց սոցիալիստական աշխատանքի կենսախինդ ու հաղթական երգը։ Սակայն Սովետական ռազմիկները զենքը ցած չէին դրել. արևելքում նոր պատերազմ էր նախապատրաստվում։ Մեր Հայրենիքին էր սպառնում ֆաշիստական Գերմանիայի դաշնակիցը՝ Ճապոնիան։

Ճապոնական իմպերիալիստները գրավել էին ռուսական հին հողերը, Կորեան, Չինաստանի հյուսիսային մասը։ Նրանք բազմաթիվ անգամ փորձեր էին կատարել զավթելու նաև մեր երկրի հեռավոր արևելյան մասը։ Բայց միշտ էլ պարտություն էին կրել։

Եվ ահա, Սովետական քաջարի Բանակը իր զենքն ուղղեց արևելքի թշնամու դեմ։

Օգոստոսի իններին մեր զորամասերը հարձակման անցնելու հրաման ստացան։

Վաղ առավոտյան սկսվեց հրետանային կրակը։ Շեշտակի ընթացքով սուրացին ռմբակոծիչ ինքնաթիռները։ Արկերի ու ռումբերի պայթյունին միացավ տանկերի և ինքնագնաց հրանոթների հռնդյունը։ Տանկերի հետևից հակառակորդի ամրությունների վրա արշավեցին մեր զորամասերը։ Ամենուրեք լսվում էին մեր ռազմիկների խրոխտ բացականչությունները.

— Ուռա՜... Հանուն Հայրենիքի... Առա՜ջ...

Հերոսական մարտերում կոփված սովետական ռազմիկները անօրինակ սխրագործություններ էին կատարում։ Տանկիստ Պետրովը, սերժանտ Գերասիմենկոն, հետախուզական ջոկատի հրամանատար Իվանովը և ուրիշները փառքով պսակեցին իրենց անունը...

Սահմանամերձ գյուղերից մեկը վերածվել էր մարտական հենակետի։ Այնտեղից թշնամին ուժեղ կրակ էր տեղում և խանգարում մեր զորքերի առաջխաղացմանը։ Հրամանատարը կանչեց տանկիստ Պետրովին.

— Արագ ընթացքով ներխուժել գյուղը և ոչնչացնել հակառակորդի կրակային կետերը։

— Լսում եմ, ընկե՛ր հրամանատար, թույլ տվեք կատարելու առաջադրանքը։

Մի քանի րոպեից հետո Պետրովի տանկը սլանում էր դեպի գյուղ։ Շատ չանցած լռեցին հակառակորդի կրակային կետերը։ Մարտական առաջադրանքը կատարված էր։ Գյուղի ամենաբարձր տան վրա ծածանվեց կարմիր դրոշը։

Ճապոնական մեկ միլիոնանոց Կվանտունյան բանակը չդիմացավ մեր զորամասերի շեշտակի գրոհին և սկսեց նա-

հանձնել կամ զենքը ցած դնել: Ճապոնական զորքի մեծ մասը գերի հանձնվեց:

Սեպտեմբերի երեքին ճապոնական բանակն իրեն պարտված ճանաչեց:

Սովետական զորամասերը հաղթականորեն առաջանում էին Մանջուրիայի խորքը...

Մոտ էր արևածագը, երբ մենք մոտեցանք առաջին չինական գյուղին: Բնակչությունն անհուն ցնծությամբ դիմավորեց մեզ, դիմավորեց ինչպես վաղուց չտեսած հարազատների: Ուրախության արցունքն աչքերում նրանք գրկախառնվում էին մեր զինվորների հետ, համբուրում այն զենքը, որով Սովետական հաղթական Բանակը իրենց ազատագրեց ճապոնական հարստահարիչներից:

Բացառիկ էր չինական աշխատավորության սերն ու հարգանքը դեպի Սովետական Բանակը: Չինացի երեխաներն ու ծերունիները մեզ դիմավորում էին կրծքներին կարմիր ժապավեններ կապած և ձեռքներին դրոշակներ բռնած:

Ազատագրված վայրերում չինական բնակչությունը կալվածատերերից ու հարուստներից խլում էր հողերը և բաժանում գյուղացիներին:

Սովետական Միության հաղթանակի շնորհիվ չինական գյուղացիությունն առաջին անգամ ազատ շունչ քաշեց:

Չին ժողովուրդը Կոմունիստական պարտիայի և նրա ղեկավար Մաո Ցզե-դունի գլխավորությամբ կանգնեց դեպի սոցիալիզմ տանող ճանապարհին. ազատագրվեց Կորեայի հյուսիսային մասը:

Ծնկի բերելով իմպերիալիստական Ճապոնիային, մեր երկիրը ազատագրեց իր նախկին հողերը և ապահովեց Հեռավոր Արևելքի անվտանգությունը:

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ՎՅԵՏՆԱՄԸ

Ասիայի հարավում, Հնդկաչինի արևելյան ծովափում տարածվում է մի հարուստ ու գեղեցիկ երկիր՝ Վյետնամը:

Վյետնամի բրնձի ու կաուչուկի անսահման պլանտացիաները, ֆոսֆորը, կապարի ու ցինկի հանքերը վաղուց էին հրապուրել իմպերիալիստներին: Դեռ անցյալ դարի կեսերին, ֆրանսիական գաղութարարները գրավեցին Վյետնամը և գաղութ դարձրին: 1945 թվականի սեպտեմբերին ժողովրդի ապստամբության շնորհիվ ստեղծվեց ժամանակավոր ժողովրդական կառավարություն՝ ընկեր Հո Շի Մինի գլխավորությամբ: Գաղութարարները պատերազմ սկսեցին ազատասեր ժողովրդի դեմ: Վյետնամի հայրենասերները՝ ընկեր Հո Շի Մինի կազմակերպած Աշխատավորների պարտիայի ղեկավարությամբ հաղթեցին:

Հիմա Վյետնամում սկսվել է խաղաղ շինարարական աշխատանքը: Կառուցվում են բնակելի նոր շենքեր, դպրոցներ ու մանկապարտեզներ, կամուրջներ ու երկաթուղագծեր, գործարաններ ու նավահանգիստներ: Ծաղկում ու բարգավաճում է ժողովրդական Վյետնամը:

Տպագրում ենք վյետնամական մի հեքիաթ, որի մեջ ժողովուրդը ծաղրել է անցյալում աշխատավոր գյուղացիներին կողոպտող վաշխառուին:

Հեքիաթը գրի է առել Վ. Ժուկովսկին:

# ՊԱՏԺՎԱԾ ՎԱՇԽԱՌՈՒՆ

(Վյետնամական ժողովրդական հեքիաթ)

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

*Ժամանակով վյետնամական մի փոքրիկ գյուղում ապրում էր ագահ ու չար Լե Վան Կանը: Այս ագահ վաշխառուն գյուղացիներին բարձր տոկոսով դրամ էր տալիս: Երբ երաշտ էր լինում կամ անձրևը հեղեղում էր դաշտերը, նա գյուղացիներից պահանջում էր պարտքերը շուտ վերադարձնել: Նրանք գրեթե միշտ չէին կարողանում ժամանակին դրամը վերադարձնել: Այդ ժամանակ Լե Վան Կանը խլում էր նրանց հողը: Եվ նա հսկայական հարստություն էր դիզում:*

*Լե Վան Կանը շատ պարծենկոտ էր. իսկ մարդիկ նրան հանդիպելիս այնպես էին ձևացնում, որ իբր թե չեն նկատում, ու մեջքները շուռ տված անցնում էին: «Գարշելի ճիճուներ,— մտքում հայհոյում էր վաշխառուն անմեղ գյուղացիներին.— երբ սովը վրա կհասնի ու քաղցից փորները մեջքներին կկպչի, այն ժամանակ կմտնեն տանս շեմքին ու ծամերով փող կմուրան, որ դաշտում չմեռնեն: Մի ամառ բրինձ են ունենում թե չէ, ոչ մեկը չի ուզում խոնարհվել իմ առաջ»:*

*Այն գյուղում, որտեղ Լե Վան Կանն էր ապրում, մի մեծ հրապարակ կար, իսկ հրապարակում՝ մի վիթխարի ծառ, որը դարեր շարունակ ժողովրդի պաշտամունքի առարկան էր: Այս ծա-*

ռի տակ ապրում էր մի ծերունի։ Ամբողջ երկրով մեկ տարածված էր այդ ազնիվ ու իմաստուն մարդու համբավը։

Մի օր Լե Վան Կանը որոշեց իմաստուն ծերունուց օգնություն խնդրել։ Եվ նա գնաց հրապարակ։

Ծերունին միայն այն ժամանակ նկատեց նրան, երբ վաշխառուի ստվերն ընկավ իր վրա։ Ծերունու հայացքի դեմ ձգվում էր մի փոշոտ ճանապարհ։ Երկու նիհար գոմեշ քաշում էին ճռճռան սայլը, իսկ ոտաբոբիկ երեխաները քշում խեղճ ու քաղցած հավերին։

— Քնո՞ւմ ես, ծերունի։ Մի՞թե չես տեսնում, թե ով է եկել քեզ մոտ։

— Ո՛չ, միտք եմ անում. ես տեսնում եմ քեզ։

— Հա՛-հա՛-հա՛... Ինչպե՞ս կարող ես փակված կոպերի միջից տեսնել։

— Փակ աչքերով մտքերս ավելի պայծառ եմ տեսնում։

— Հա՛-հա՛-հա՛... Չեմ հավատում։ Ինձ թվում է, որ դու քնում ես, որովհետև օրերով ծառի տակ նստած բան չես անում։ Ուրիշ անգործների չեմ սիրում, բայց քեզ այս անգամ զիջում եմ։ Ահա, որպես բարության վկայություն, քեզ համար



Եվ նա գնաց հրապարակ:

բրինձ եմ բերել։ Դրա փոխարեն դու պետք է ինձ մի խորհուրդ տաս. ի՞նչ անեմ, որ բոլորն ինձ ճանապարհ տան, ինձ հանդիպելիս գլխարկները հանեն ու անունս բարձրաձայն ասեն։

Եվ վաշխառուն ծերունու ոտքերի մոտ արմավենու տերևներից հյուսած մի զամբյուղ դրեց։ Զամբյուղի մեջ երկու բուռ բրինձ կար։ Իմաստուն ծերունին նույնիսկ ձեռք չտվեց։ Մի քանի րոպե լուռ մնալուց հետո, նա աչքերը կիսախուփ՝ պատասխան տվեց.

— Գտիր ամենակարճ բռնակով մի հովանոց և երկու մեծ կողով։ Երբ շուկա գնաս, հովանոցը գլխիդ բռնիր, իսկ երկու ծայրից կողովներ կախած բամբուկե ձողը դիր ուսիդ... Այսպիսով, քո ցանկությունը կկատարվի։

— Իսկ կողովների մեջ ի՞նչ դնեմ։

— Կողովները կարող են դատարկ լինել։ Իսկ եթե ձեր համագյուղացիներին ես ուզում տեսնել, մի կողովի մեջ օձ դիր, իսկ մյուսում՝ վագրի ժանիք։

Լե Վան Կանը կատարեց իմաստուն ծերունու խորհուրդները։ Նա գնեց կարճ բռնակով մի հովանոց, երկու մեծ կողով, իսկ իր մշակի օգնությամբ ձեռք բերեց վագրի ժանիք ու մի օձ։ Արդեն ամեն ինչ պատրաստ էր։ Վաշխառուն անհամբեր սպասում էր շուկայի օրվան։

Վերջապես եկավ ցանկալի առավոտը։ Լե Վան Կանը շտապ հագավ իր լավ խալաթն ու տնից դուրս եկավ...

Ագահ վաշխառուի ցանկությունը կատարվեց։ Երբ մարդիկ տեսան մեծ-մեծ կողովները, վաշխառուին ճանապարհ տվեցին։ Կարճ բռնակով հովանոցն էլ անցորդների գլխարկներին էր դիպչում։ Ահա թե ինչու մարդիկ նախօրոք հանում էին գլխարկները, կամ բռնում կրծքների վրա։ Վաշխառուն կարծեց, թե նրանք հեռվից ողջունում են իրեն. բայց տեսեք, թե նա ինչպիսի խոսքեր լսեց.

— Այդ ի՞նչ է տանում կողովներով։

— Տեսե՛ք, տեսե՛ք, վաշխառուն իր քրոջը՝ թունավոր օձին է տանում...

— Տեսե՛ք, երկրորդ կողովի մեջ վագրի ժանիք կա։

— Նայեցեք, մարդիկ, ահա գալիս է Լե Վան Կանը, որ խլել է մեր հողը, մեզ կեղեքել։

Շուկայում աղմուկ բարձրացավ։ Բոլոր անկյուններում մարդիկ տարբեր ձևերով կրկնում էին վաշխառուի անունը։ Լե Վան Կանը կողովները դեն շպրտեց և կատաղությունից գլուխը կորցրած, վազեց դեպի ծերունին։ Վաշխառուի հետևից գնաց գյուղացիների մի հսկայական բազմություն, շարունակելով հարստի գլխին շաղ տալ ամենավիրավորական մականունները։

Նա մոտեցավ ծառին, որի տակ նստած էր իմաստունը, բայց վախենալով մարդկանց վրեժխնդրությունից, չհամարձակվեց չարացնել ծերունուն։ Իսկ ծերունին աչքերը փակ՝ լուռ նստած էր։

— Ի՞նչ ես ուզում ինձնից,— վերջապես պատասխանեց իմաստունը,— մարդիկ ճանապարհ չտվեցի՞ն։

— Այո, բայց ո՛չ ինձ, այլ՝ կողովներին,— ավելի կատաղած գոչեց Լև Վան Կանը,— մարդիկ ճանապարհ տվեցին, որովհետև կողովները նրանց խանգարում էին...

— Բայց ո՞ւմ հայհոյեցին, քե՞զ, թե կողովներին,— առաջվա նման հանգիստ հարցրեց ծերունին,— եթե քեզ, նշանակում է ճանապարհ են տվել։ Եվ քո անունը նրանք տվել են։

— Բայց նրանք ինձ հայհոյեցին, իսկ ես ուզում էի, որ նրանք ինձ հարգեին,— հառաչեց վաշխառուն։

— Իսկ դու ի՞նչ բարի գործ ես արել։ Ի՞նչ ես արել, որի համար պատվեին, անունդ բարձր պահեին։ Աղքատներից որևէ մեկին օգնե՞լ ես։ Ցույց տուր, թեկուզ մի ընտանիք, որին մի քիչ օգնել ես, կամ մի երեխայի, որ մի բան ես նվիրել...

Լև Վան Կանը շուրջը նայեց։ Նրան էին նայում բնակիչների ցասումնալից աչքերը, սեղմված բռունցքները։

— Հիմա դու հավանաբար հասկացար, որ հարստության միջոցով չի կարելի հարգանք ու պատիվ ձեռք բերել։ Քո հարստությունը արյունով ու արցունքով է շաղախված։

Ագահ վաշխառուն փախավ։ Նա լսեց մարդկանց ծիծաղն ու անեծքը։ Աղջիկները կարմիր ծաղիկներից մի մեծ պսակ հյուսեցին և նրանով ազնիվ ծերունուն զարդարեցին։



Շուկայում աղմուկ բարձրացավ։

***

Այո՛, իմ բարեկամներ, վագրը լավ է, քան հարուստ մարդը։ Նույնիսկ վագրը իր զոհից հարգանք ու պատիվ չի պահանջում հոշոտելու ժամանակ։

Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ

# ԼՃԱԿԻ ԱՓԻՆ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ձմեռ էր, ցուրտ ձմեռ։ Տատոն այցելեց մեզ և հայտնեց, որ հյուրեր ունի. նրանք եկել են Խաբարովսկ քաղաքից։ Խոմենկոյի հարցին, թե ինչ մարդիկ են, որսորդը պատասխանեց.

— Ջուր չափող. Աննա Մաքսիմովնա և Կոստյա Լոմովսկի, ինժեներներ են. եկել են չափեն Ջեկ Լոնդոն լճակի ջուրը, հիդրոկայան կառուցելու համար։

Դուրս գալիս Տատոն չմոռացավ հիշեցնել.

— Հիմա քնեք. վաղը կեսօրին ճանապարհ ենք ընկնում։

Մյուս օրը, ժամանակից շուտ մենք մտանք Տատոյի յուրտը։ Տատոն առաջ եկավ և մեզ ներկայացրեց հյուրերին.

— Յան,— ապա ձեռքը պարզելով դեպի Խոմենկոն ավելացրեց,— Նիկոլայ Խոմենկո։

Աննան երեսունին մոտ վայելչակազմ կին էր, Լոմովսկին թխադեմ էր ու ժպտուն։ Մինչև Օլշանն ու Խալիտ Ումեկիչը կբեռնեին նարտը, մենք խոսում էինք մեզ հուզող հարցերի մասին։ Իսկ երբ վերջին պայուսակը դուրս տարան յուրտից, Տատոն վերցրեց հրացանն ու ասաց.

— Գնում ենք։

Ես ու Խոմենկոն տեղավորվեցինք վերջին սահնակի վրա։

Տայգան լուռ էր և ցուրտ։ Երբեմն լսվում էին բևեռային կաքավների ծանր կռնչյունները, որոնք ընդհատվում էին պատառոտվող սառույցի խուլ որոտներով։ Մեր նարտը հեռանում էր Բուրխալա գետի ժայռոտ ափերից։ Օլշանն շտապեցնում էր եղջերուներին։ Լեռներից ցած սահող մառախուղը գնալով նոսրանում էր։ Ձյունապատ ժայռերի հետևից գծագրվում էր գունատ արևի անճառագայթ սկավառակը։ Քանի մեր նարտը վեր էր բարձրանում, այնքան ցուրտը մեղմանում էր և օրը տաքանում։ Գնալով մեր դեմ բացվում էին Մորժասարի մառախուղներից ազատ աղամանդե գագաթները, դեպի երկինք էին ձգվում դարեր շարունակ

*այդ սառնամանիքներում քարացած փշատերև վիթխարի ծառերը։ Արահետը գալարվում էր նեղ սարալանջերով, և փոքր կաշիներով իրար կապած մեր սահնակները կողքից կողք էին թեքվում, երբեմն էլ կպչում ծառերի բներին։*



Տաառն... մեզ ներկայացրեց ճյուներին։

*Երբ անցանք «քարայծերի բաշերից», և մեր առջև բացվեց փոքրիկ ու գողտրիկ բացատը, Տաառն նշան արեց. նարտը կանգ առավ։ Այստեղ էր, որ առաջին անգամ երևաց իր ժայռոտ ափերի մեջ սեղմված լճակը։ Բարձրանում էր լճակի մշուշի նման թանձր գոլորշին և պտտվում տաք ջրի վրա։ Արևը դողդողում էր վճիտ կոհակներում, կարծես մրսում էր ցրտից ու շտապում մայր մտնել։ Նա իջավ Մորժոտ սարի հետևը և ոչ մի ճառագայթ չթողեց նրա սառցե կատարին։ Օրն արագությամբ սկսեց մթնել։ Ստվերները սևացան, ձյունը գորշացավ, լճակը խորասուզվեց երեկոյան անուրջների մեջ։ Ցուրտը սաստկանում էր։ Քիչ հետո հորիզոնի վրա երևացին թրթռացող կարճ ճառագայթներ և բևեռային մութ գիշերը լուսավորվեց։*

*— Սկսվում է,— ասաց Տաառն,— պետք է շտապել Ջեկ Լոնդոն, հինգ րոպեի ճանապարհ է մնացել։ Աննան ու Լոմովսկին թափ տվին իրենց բուրքերի վրայի ձյունը, ուղղեցին երեսկալները, և նարտը շարունակեց բարձրանալ սառցե լեռը։ Հորիզոնում թրթռացող ճառագայթները երկարում և ձգվում էին դեպի վեր, տեղատվության ու մակընթացության նման նրանք հաջորդում էին մեկը մյուսին և գնալով մեծանում ու ահագնանում էին։*

*— Կանգ առեք,— ձայն տվեց Աննա Մաքսիմովնան Օլշանին,— կանգ առեք, հյուսիսային բևեռափայլն սկսվում է։*

*Օլշանը ետ նայեց։ Նա ցանկանում էր սանձել եղջերուներին, բայց Տաառն չթողեց, շտապեցրեց։ Մինչդեռ Աննան կպատրաստվեր իջնել սահնակից, Օլշանը մտրակեց եղջերուներին ու լծաշարքը առաջ սլացավ։*

*Տայգան մնաց հետևում։ Երևացին վտիտ ու գունատ կեչիները, բայց շուտով նրանք էլ անհայտացան։ Վերջացավ նաև բուսականության շերտը։ Նարտը բարձրացավ վերջին բլրակը։ Հասանք սառցե կույտերին ու ձյունից ազատ վիթխարի ծերպերին։ Հյուսիսային բևեռափայլի հզոր ճառագայթները խոյանում էին դեպի երկնքի գմբեթը։ Գիշերը ցերեկվա նման պարզ էր ու լուսավոր։ Եղջերուները անհանգստության նշաններ արեցին։ Տաառն կանգնեցրեց նարտը և անմիջապես բաց թողեց լծաշարքը։ Կապանքներից ազատված եղջերուները շուռ եկան ու վազեցին իրենց թողած հետքերով, վար իջան սարից ու մտան տայգան։ Նարտը մնաց ապառաժի տակ։ Մենք ոտքով ճանապարհ ընկանք դեպի Ջեկ Լոնդոն լճակը։ Ձյունն այստեղ այնքան կարծր էր, որ մեր ոտքերը հետքեր անգամ չէին թողնում։ Գնում էինք լուռ ու մունջ և թվում էր, թե հիմա երկինքը կրոնկվի, բևեռափայլի վեր խոյացող հսկա սյուները գլանիտի ծանրությամբ կփլվեն մեր գլխներին։ Ահա մի խուլ դղրդյուն ցնցեց սառցե լեռը և կարմիր հրեղունգը կախվեց երկնքի գմբեթից...*

*— Ցա՛ն,— շշնջաց Լոմովսկին ու ձեռքով ցույց տվեց Աննա Մաքսիմովնայի կողմը։*

*Ես հասկացա. մոտեցա երիտասարդ աղջկան։ Նա գունատ էր և հուզված։ Նրա լայն բացած աչքերը կարծես սառել էին ցրտից ու անշարժացել, շուրթերը ջղաձգաբար դողում էին և ինչ-որ բան մրմնջում։*

*— Դուք մրսո՞ւմ եք, Ա՛ննա Մաքսիմովնա,— հարցրի։*

*Նա նայեց ինձ, բայց ոչինչ չասաց. հանեց թաշկինակը և սրբեց ճակատի քրտինքը։ Քիչ հետո նա համարյա թե վազում էր դեպի լճակը։ Կրակի գունդը սկսեց մեծանալ։ Միայն մի քանի քայլ էր մնում, որ հասնեինք լճակին։ Այդ պահին սառույցը շարժվեց մեր ոտքերի տակ. շարժվեց, ճռճռաց ու պատառոտվեց։ Աննան վազում էր։ Փորձեցի կանգնեցնել նրան, բայց իզուր։ Մեր առջևն էր բնության հրաշքներից մեկը, որը քչերին է հաջողվում տեսնել կյանքում և զգալ այդքան անմիջականորեն։ Սառույցների տակ, վաթսուն աստիճանից ավելի ցրտության մեջ ծփում, ալեկոծվում էր տաք լճակը։*

*— Մա՛մա,— ճչաց Աննան և ամուր, շատ ամուր բռնեց իմ թևը։*

*Լճակում ջրի մեջ բոցկլտում էր բևեռափայլի*

կրակե գունդը: Նա այրվում էր, վառվում խարույկի նման և ինչպես հրե մի պանդված ջրի հատակից բարձրանում դեպի վեր: Իսկ ափերի սառույցների վրա դողդողում ու երերում էին ծիածանի բոլոր գույները, շլացուցիչ արագությամբ հաջորդելով մեկը մյուսին: Եղավ մի վայրկյան, որ կարծես թե ամեն ինչ լռեց: Այդ վայրկյանը ամենից կախարդիչն ու հմայիչն էր: Ջահի պես կախված կրակե գունդը սկսեց ճոճվել և իջնել երկրի վրա: Ջուրն ու սառույցները կարծես հրկիզվում էին սառը բոցերում, իսկ լեռան ստորոտում ասես վառվում էր դարավոր տայգան:

Լճակի մակերեսից օդ բարձրացան ձյան փաթիլները: Նրանք ցոլում էին երփներանգ գույների մեջ ու սպիտակ թիթեռնիկների նման վեր ու վար թռչում:

— Ջրի գոլորշին է,— բացատրեց Տատոն,— օդ բարձրանալուն պես ցրտից սառույցի կտորներ են դառնում. երբ բևեռափայլը դադարի, նրանք նորից կթափվեն լճակի մեջ:

Բայց Տատոյին ոչ ոք չէր լսում: Աննան հափշտակված մանկան պես անընդհատ փոխում էր տեղը և չգիտեր, թե ուր նայեր. հրդեհներում այրվող տայգային, սառույցների մեջ թրթռացող ծիածաններին, ջրից բարձրացող կրակին, թե՞ երկնքում կախված հրե գնդին: Նա շփոթված էր երեխայի նման, շփոթված հիացմունքից: Նա ետ վազեց ու ընկավ Տատոյի գիրկը:

— Ի՞նչ է կատարվում,— շշնջում էր Աննան,— ես կարող եմ խենթանալ, Տատո՛, բռնիր ձեռքս, ամուր բռնիր...

Տատոն նայեց երիտասարդ աղջկա այրվող դեմքին, բայց ոչինչ չասաց: Աննան հանկարծ բաց թողեց նրա ձեռքը, առաջ ընկավ ու սկսեց իջնել առափնյա ժայռերից: Աննային մի պահ թվաց, թե լճակի ջուրը քարե հատակից բարձրանում է: Նա ետ նետվեց վախեցած: Հուզված լճակն այդ պահին հանդարտվեց, կոհակները կանգ առան, կրակը մարեց նրա հատակում. չքացավ երկնքի գմբեթում ճոճվող հրե գունդը: Սառն ու սպիտակ բևեռային ճառագայթներն իջան հորիզոնի հետևը:

Հյուսիսային բևեռափայլը վերջացավ: Ամեն ինչ մթնեց ու գորշացավ, հարդագողի ճամփան սկզբում մշուշի նման, հետո վառ աստղերով ձգվեց երկնակամարում, հեռու-հեռու լեռան հետևից փայլատակեց լուսաստղը: Տայգան մթնեց: Ստվերները լուծվեցին գիշերվա խավարում:

Արդեն լույսը բացվում էր. վրաններն ու քնապարկերը պատրաստ էին:



...բոցկլտում էր բևեռափայլի կրակե գունդը:

# ՀԱՐԱԶԱՏ ԴՊՐՈՑ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երբ աշնան շունչը
Ճամբարում առանք,
Մեր չքնաղ դպրոց,
Քո գիրկը եկանք:
Կարոտել էինք
Քո անուշ կանչին,
Ու ծանոթ զանգի
Քաղցր ղողանջին:

Դե՛, հնչիր, զանգակ,
Քաղցր ղողանջիր,
Մոր պես գթառատ
Մեզ գիրկդ կանչիր:
Ողջո՛ւյն քեզ, ողջո՛ւյն,
Հարազատ դպրոց,
Մեր վարքի-բարքի
Եվ ուսման դարբնոց:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԵՏՈՐՍՆԵՐԸ

(Հատված «Նավարկություն դեպի Արկտիկա» գրքից)

Ա. ՍՈԼՅԱՆԻԿ

Թրգմ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

Յոթերորդ անգամ էր, որ նավատորմիկը գտնվում էր Հարավային բևեռի լայնություններում։ Բայց այնպիսի մրրիկների, ինչպիսիք մեզ նեղում էին 1952 թվականի դեկտեմբերին, մենք դեռևս չէինք հանդիպել։ Նույնիսկ ֆլագմանական նավի վրա ամեն ինչ երերում էր։ Նավասենյակներում այս ու այն կողմ էր թռչում կահույքը, իսկ ջարդված ամանեղենն ավելի շատ էր, քան անցյալում եղած ուղածդ հարսանիքին։ Ճաշի ժամանակ ափսեներն ու բաժակները սահում էին սեղանի վրայով. դրալը հանգիստ դեպի բերանը կարող էր տանել միայն փորձված ձեռնածուն։ Իսկ կետորս նավերի նույնիսկ տախտակամածի կամ կամրջակի վրա կանգնելը մեծ ջանքեր էր պահանջում։ Այդ օրերին որս կատարելը աներևակայելի էր։ Այդպիսի օրերից մեկում չտեսնված հաջողության հասավ «Սլավա—9» նավի հարպունորդ Գրիգորի Պանովը։

Սլավի տափաստանների ծնունդ Գրիգորի Պա-



Մրրիկը հասնում էր տասնմեկ բալլի։

նովը պատանի հասակում գնում է Հեռավոր Արևելք։ Այնտեղ նա ընդունվում է «Վամուռ» խեցգետնորս նավատորմիկը, իսկ հետո՝ «Ալեուտ»։ Այստեղ նա սովորում է փառաբանված կետորսներ՝ Աֆանասի Պուրգինի, Պյոտր Զարվայի և Ֆյոդոր Պրոկոպենկոյի մոտ։ Պանովը մեզ մոտ եկավ ունենալով աշխատանքային մեծ փորձ՝ Օխոտի, Բերինգի և Չուկոտսկի ծովերում։ Շուտով նա դարձավ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս։ Երբ մի քանի տարի առաջ երիտասարդ հարպունորդ, այժմ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Նիկոլայ Գլինյակը սկսեց որս անել նաև մրրիկի ժամանակ, Պանովը արագ կերպով ընդօրինակեց նրա նախաձեռնությունը։ Այդ օրվանից Պանովը չի սիրում թողնել տախտակամածը նույնիսկ ինը բալլանոց մրրիկի ժամանակ։

Պանովին ձանձրացրել էր եղանակի բարեփոխմանն սպասելը. նա որոշեց ընդառաջ գնալ տարերքին։ Կետորսները նրա այդ մտադրությունը համարում էին անմիտ։

— Դա մարդկային ուժերից վեր է,— ասում էին նրանք։

Պանովը միայն ժպտում էր։

— Կփորձենք...

Մրրիկը հասնում էր տասնմեկ բալլի։ Դժվար է արտահայտել բառերով, թե ինչ է դա նշանակում։ Քառասուն տարի առաջ ընդունվել և այժմ էլ բոլոր երկրներում գործում է այսպես կոչված Բոֆորտովի աղյուսակը՝ տասներկու բալլանոց չկալան, միջավայրի վրա քամու ուժի ազդեցության գնահատման համար։ Նրանում նշված է, որ ինը բալլի առկայության դեպքում քամին պոկում է տանիքների կղմինդրները, քշում տանում է ծխնելույզները, տասը բալլի դեպքում արմատահան է անում ծառերը, իսկ տասնմեկի ժամանակ առաջացնում է կատաստրոֆիկ ավերվածություն։

Այդ օրն օվկիանոսում ամեն ինչ փրփրում և մոլեգնում էր։ Քամին սլանում էր մի վայրկյանում մոտ երեսուն մետր արագությամբ։ Երկար ալիքները բարձրանում էին քսան մետր. պատի նման կանգնում էին ֆլագմանական նավի առջև, ապա փլվում նրա վրա։ Կետորսները դադարեցրել էին որսը։

«Սլավա—9» նավը մեզ հետ չէր։ Նա գնացել էր կետեր փնտրելու։ Նրանց գտնելը, իհարկե, հեշտ չէր։ Մրրիկներից ուժասպառ եղած կետերը ձգտում էին հնարավորին չափ քիչ լինել օվկիանոսի վերին շերտերում. եղած ժամանակ էլ պաշտպանություն էին գտնում սառցալեռների ներքո։ Հենց սրանց ուղղությամբ էլ կուրս վերցրեց նավի կապիտան Դիմիտրի Տիտուղովը։ Ժամերն անցնում էին, իսկ քամին չէր հանդարտվում։ «Սլա-

վա—9», ինչպես հետո պատմում էր Տիտուզովը, զգուշությամբ շրջանցում է սառցալեռները՝ շատրվաններ փնտրելով։

Կայմահարթակի նավաստի Նիկոլայ Զարուբինն ինչ-որ հրաշքով ամուր կանգնել էր «ագռավի անցքում» և աչքերից չէր հեռացնում հեռադիտակը։ Պանովը թնդանոթի մոտ էր։

— Կաշալո՛տ, նավեզրից աջ,— վերջապես զեկուցեց Նիկոլայ Զարուբինը։

Ցածր շատրվանը նկատեց նաև Պանովը։ Եվ նայելով, նա բարձրացրեց ձեռքը։ Նավապետը հասկացավ հարպունորդին և կատարեց անհրաժեշտ շրջանցը։ Արդեն լավ տեսանելի էր, թե ինչպես շտապելով շունչ քաշել, կաշալոտը հաճախակի բաց էր թողնում շատրվան շատրվանի հետևից։ Բայց նավը դեռ չէր հասցրել մոտենալ նրան, երբ կետի գլուխը անհայտացավ ջրի տակ, իսկ ալիքների վրա մերթընդմերթ երևում ու անհետանում էին կետի պոչի լայն թիաբերանները։ Կաշալոտն անհայտացավ։ Պանովին դա չանհանգստացրեց։ Կաշալոտը սովորականի պես անցավ ջրի տակ. իսկ դա նշանակում էր, որ նա չէր նկատել նավը։ Ուրեմն, դեռ շատ բան չեն կորցրել։ Բայց կաշալոտն ընդունակ է ջրի տակ մնալ մեկ, մեկ ու կես ժամ։ Ոչինչ անել չես կարող. պետք է սպասել։ Հարպունորդը, ինչպես հետո նա ինքն խոստովանեց, մտածում էր այն մասին, թե արդյոք չափից ավելի չի՞ շահագործում իր ընկերների համբերությունը։ Պանովը նայեց նավապետին, նրա օգնականին ու նրանց հայացքում չնկատեց ո՛չ նախատինք և ո՛չ էլ հոգնածություն։ Նա որոշեց չհանձնվել։

Նավը շրջում էր պալատի նմանվող մեծ սառցալեռան մոտերքում, որտեղ Պանովը, ինչպես ինքն էր ասում, կաշալոտի հետ հանդիպում էր նշանակել։ Օվկիանոսն առաջվա նման մռնչում ու գալարվում էր։ Պանովը կանգնել էր թնդանոթի մոտ, կարծես կպել էր նրան։ Չէ՞ որ այդ պահին հեռանալ չէր կարելի։ Կաշալոտը կարող էր երևալ սպասածից շուտ, որովհետև մրրիկի պատճառով նա չէր կարողացել ազատ շունչ քաշել։ Պանովին առաջարկեցին իջնել նավասենյակ, որպեսզի տաքանա և չորացնի հագուստը։ Բայց հարպունորդը միայն բացասաբար շարժեց գլուխը, չցանկանալով տեղի տալ կետի կորուստին։

Դրա համար էլ նա հարպունորդ է. և ամեն ինչ սկզբից պետք է նախատեսել. պետք է համբերել ու սպասել, եթե դա անհրաժեշտ է։

Վայրկյաններն անցնում էին ինչպես երկար ու ձիգ ժամեր։ Որպեսզի ժամանակն աննկատելի անցնի, Պանովն սկսեց մտքում հաշվել, թե որքան և ինչ կարտադրվի մեկ կաշալոտից։ Հարպունորդը պատկերացնում էր գեղատեսային սրվակները՝ «Ա» վիտամիններով, արկղիկները՝ ամպուլներով, փո-



...Պանովը նշան բռնեց։

շիներով, հաբերով լեցուն, շաքարախտի, արյան չարորակ պակասության և այլ հիվանդությունների բուժման համար։ Նա իր հաշվումները չէր վերջացրել, երբ ջրից հանկարծ դուրս ժայթքեց լայն շատրվանը, իսկ նրանից հետո երևաց կաշալոտի հսկայական սև գլուխը և նույնպիսի սև սապատավոր մեջքը։ Համբերությամբ սպասելով մի քանի վայրկյան, Պանովը նշան բռնեց։ Դիպուկ հարվածը տապալեց կետին։

Կեսօրին, երբ քամին հասավ փոթորկի ուժի, «Սլավա—9» նավը կաշալոտը անսպասելիորեն հասցրեց ֆլագմանական նավին։

Տասնմեկ բալլանոց մրրիկի ժամանակ սովետական հարպունորդի կողմից առաջին անգամ կետի որս կատարվեց։

Հաջողվե՞լ է դա երբևիցե արտասահմանյան կետորսներին՝ չգիտեմ։ Բայց ինձ չի պատահել, որ կարդացած կամ լսած լինեմ այդպիսի դեպքերի մասին։

# ԱՆՎԱՆԻ ԳՐՈՂԸ



Շատ տարիներ առաջ էր: Թիֆլիսի տպարաններից մեկը մտավ մի պատանի: Նա եկել էր Ղարաքիլիսայից՝ Ներսիսյան դպրոց ընդունվելու: Բայց անապահով լինելու պատճառով թողեց սովորելու մտադրությունը: Տպարանում նրան ընդունեցին որպես սրբագրիչի օգնական: Համառ աշխատանքով նա լրացրեց իր գիտելիքների պակասը, փորձեց ուժերը գրական ասպարեզում: Թերթերից մեկում տպագրվեց նրա պատմվածքը: Մյուսները նա սրտի թրթիռով ցույց տվեց Շիրվանզադեին, Թումանյանին: Նրանք խրախուսեցին երիտասարդ հեղինակին: 1918 թվականին լույս տեսավ պատմվածքների առաջին ժողովածուն՝ «Տխուր մարդիկ» վերնագրով:

Այսպես է սկսել իր ստեղծագործական կյանքը սովետահայ անվանի արձակագիր Ստեփան Զորյանը:

Զորյանն սկզբում գրում էր պատմվածքներ հին քաղաքի և գյուղի մասին, ցույց տալիս հայ հողազուրկ գյուղացու կյանքը:

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան բարեբեր ազդեցություն գործեց գրողի վրա: Նա սկսեց անդրադառնալ ռևոլյուցիոն թեմաներին: «Հեղկոմի նախագահը» և «Գրադարանի աղջիկը» վիպակները Զորյանի լավագույն գործերից են: Նրանք մեզ տանում են դեպի քաղաքացիական կռիվների օրերը, երբ Հայաստանում Սովետական կարգերի հաստատման և ամրապնդման համար պայքարում էին խիզախ ու անձնվեր մարդիկ: Այդ մարդիկ չեն վախենում դժվարություններից, հաղթահարում են բոլոր խոչընդոտները, կատարում իրենց հայրենասիրական պարտքը:

Հրաշալի է գրված Զորյանի «Մի կյանքի պատմություն» ինքնակենսագրական վեպը: Վեպի փոքրիկ հերոսը պարզ ու մատչելի ձևով սկսում է պատմել իր մանկական առաջին տպավորությունների մասին: Ինչքա՜ն կենդանի է տրված անցյալի անտանելի կյանքի նկարագրությունը: Երեխան մի կտոր շաքար է գողանում և դրա համար՝ ընտանիքում քաժանք է լինում:

Այդտեղ ցույց է տրված, թե ինչքան ծանր էր հայ աշխատավորի օրը, ճնշված էր հայ ժողովուրդը ցարական կարգերի օրոք. բռնի փակվում էին հայկական դպրոցները, ճնշվում էր ամեն մի առաջավոր միտք:

Զորյանը հրաշալի պատմվածքներ ու վիպակներ է գրել մեր օրերի մասին, որոնց մեջ նկարագրված է սովետական կյանքը, մեր մարդկանց վերափոխումը ազնիվ ու ստեղծարար աշխատանքում, նրանց հերոսական գործերը Հայրենական Մեծ պատերազմի օրերին:

Զորյանը գրել է նաև «Պապ թագավոր» հայրենասիրական պատմավեպը, հիանալի մանկական պատմվածքներ: Ո՞վ չի կարդացել «Խուժան Արջոն», «Սև Սերոն», «Վանուշը», «Կարմիր արագիլը» և ուրիշ գործեր: Նրանց մեջ շատ լավ է պատկերված մանուկների կյանքը, հոգեբանությունը...

Զորյանը կարճ պատմվածքի իսկական վարպետ է: Նրա լեզուն պարզ է և հյութեղ: Հեղինակի գեղեցիկ պատմելաձևին միահյուսվում է նուրբ հումորը: Անցյալում նա շարունակում էր հայ կլասիկ արձակի տրադիցիան, իսկ մեր օրերում սոցիալիզմ կառուցող մարդկանց կյանքի պատկերմամբ առաջնակարգ գրողի անուն ձեռք բերեց:

Ստեփան Զորյանը միաժամանակ ակտիվ հասարակական գործիչ է, Սովետական Միության Գերագույն Սովետի դեպուտատ: Նա պարգևատրված է շքանշաններով:

Այս ամսին լրացավ անվանի գրողի ծննդյան 65 տարին:

# ՅԱՆ ՌԱՅՆԻՍ

(Ծննդյան իննսուն տարին)

*Յան Պլիեկշանը՝ լատվիական ապագա մեծ գրող Ռայնիսը ծնվեց Կուրլանդիայում 1865 թվականի օգոստոսի 30-ին:*

*Նա լավ կրթություն ստացավ: Հատկապես շատ լեզուներ սովորեց և ագահությամբ կարդում էր աշխարհի մեծ գրողների գործերը, ռուս բանաստեղծների ստեղծագործությունները: Նա այնքան սիրեց այդ գրողներին, որ շատ բան թարգմանեց նրանցից: Նրա թարգմանությունները մոտավորապես տասնութ հատոր են կազմում: Նրանցից լավագույնները՝ Գյոթեի «Ֆաուստը», Պուշկինի «Բորիս Գոդունովը», լատվիական գրականության և լեզվի զարգացման գործում կարևոր դեր խաղացին:*

*Համալսարանն ավարտելուց հետո Յանը իրավաբանությամբ էր զբաղվում: Նա նույնիսկ ուսանողական քաղաքական խմբակի անդամ էր: Այդ տարիներին էր, որ նա մասնակցեց «Դիենաս լապա» թերթի հրատարակման գործին, իսկ հետո դարձավ նրա խմբագիրը: Այդ թերթը առաջավոր մտքեր էր քարոզում լատվիայի աշխատավորության մեջ. դրա համար էլ հալածում էին նրա հրատարակիչներին: Բայց ոչ մի բան չընկճեց, ո՛չ ռևոլյուցիոներ Յան Պլիեկշանին, ո՛չ էլ նրա ընկերներին:*

*1896 թվականին ամսագրերից մե-*

կում երևացին մի շարք ոտանավորներ, որոնք հեղինակը հրատարակել էր «Ռայնիս» կեղծ անունով։ Այդ ժամանակվանից էլ նա ճանաչվեց որպես Յան Ռայնիս։

Դրան հետևում է առաջին բանտարկությունը, հետո երկրորդը, 1899 թվականին նա հինգ տարով աքսորվեց հեռավոր Վյատկայի նահանգը։ Հարազատներից ու ընկերներից հեռու, օտարության մեջ Ռայնիսն աշխատում էր։ Նա այդտեղ հուզիչ բանաստեղծություններ է գրում, նմանապես թարգմանություններ կատարում։

«Կապույտ երեկոյի հեռավոր ակկորդներ» գիրքը նրան միանգամից դարձրեց լատվիական պոեզիայի աչքի ընկնող դեմքը։ Նա նոր խոսք էր ասում։ Ռայնիսը գրում էր աշխատավորների համար, որոնք ապրում և աշխատում էին ստրկության մեջ, բայց արդեն ձգտում էին դեպի արևը, դեպի ազատությունը։ Բայց այդ ազատությունը պետք է ծնվեր կռվում։

Եկավ 1905 թվականը։ Ռևոլյուցիան փոթորկում էր Ռուսաստանում։ Ռայնիսը նորից հայրենիքում էր, հարազատ Լատվիայում։ Նա պայքարող ժողովրդի հետ էր։ Նրա ռևոլյուցիոն թափն իր գագաթնակետին է հասնում «Փոթորկի ցանքսերը» գրքում։

Ռևոլյուցիային հաջորդած ռեակցիայի տարիներին էլ Ռայնիսի ձայնը զորեղ է հնչում։ Նա կոչ էր անում ռևոլյուցիոներներին «մեռնել բաց դաշտում», թշնամու դեմ մարտնչելիս։ Այդ օրերին է, որ նա թարգմանեց Մ. Գորկու «Բազեի երգը»։ Նրա ստեղծագործությունները կարդում էին բոլորը, նրանցով ոգևորվում էին ռևոլյուցիոներների սերունդները։

Ժողովրդական բանաստեղծը շատ է գրել նաև պիեսներ։ Սրանցից են «Կրակ և գիշեր», «Ոսկե նժույգը» և այլ գործերը, որոնք բեմադրվել են շատ բեմերում, համաշխարհային փառք բերել հեղինակին,

1916 թվականին հնչեց Լատվիայի մեծ գրողի կոչը՝ «Մենք սպասում ենք ազատագրության. սպասում ենք ազատ Լատվիային, ազատ Ռուսաստանում»։

Երկար տարիներ Ռայնիսն ապրում



էր հայրենիքից հեռու՝ արտասահմանում։ Կյանքի վերջին տարիներին նա վերադարձավ Լատվիա։

Ռայնիսը մեռավ 1929 թվականին։ Ժողովրդական մեծ գրողին այսօր ոչ միայն սիրում է լատվիական ժողովուրդը, այլև մեր մեծ Հայրենիքի բոլոր ժողովուրդները։

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

## ԿԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ

# «ՀԱՐՅՈՒՐԵՐՈՐԴ ՀԻԵՐՈԳԼԻՖԸ»




Մի տարի է, ինչ փոքրիկ Բաո Զանը կապ է հաստատել Մեյ Լիի հետ։ Մեյ Լին յոթանասուն տարեկան կին է. նա մենակ է ապրում. բայց Զանը դասերից հետո գալիս է Մեյ Լիի մոտ և նրան գրել սովորեցնում։ Այս անգամ նա ավելի շուտ է եկել. որովհետև այսօր Մեյ Լին նրան հետաքրքիր բան է պատմելու։

— Երբ ես արդեն հարյուր հիերոգլիֆ իմանամ, իմ կյանքից քեզ մի հետաքրքիր դեպք կպատմեմ,— այսպես էր ասել նրան պառավ Մեյ Լին. իսկ Բաո Զանը երեկ նրան սովորեցրել էր հարյուրերորդ հիերոգլիֆը և հիմա անհամբեր սպասում էր պատմությանը...

Դուք երևի արդեն հիշեցիք այս պատմվածքը, որը կարդացել եք հենց այս ամսագրի էջերում։ Դա Սաղաթել Հարությունյանի «Հարյուրերորդ հիերոգլիֆը» պատմվածքն է։

Այդպես է կոչվում նաև Սաղաթել Հարությունյանի պատմվածքների գրքույկը։ Նրանցից շատերը նույնպես ձեզ ծանոթ են ամսագրից. օրինակ՝ «Ցուրտ դեկտեմբերին», «Ընկերները», «Ժողովրդական բանակի զինվորը» պատմվածքներն ու «Ամդարնայի վերջը» հեքիաթը։

Գրքույկում դուք կկարդաք նաև «Քեռի Կարմիզը» պատմվածքը։ Դա մի ղազախ ուսուցչի մասին է, որը ռազմաճակատում հարյուրավոր նամակներ էր ստանում իր բազմաթիվ աշակերտներից։ Նրանք վաղուց արդեն ավարտել էին դպրոցը։ Շատերը ծառայում էին բանակում՝ օդաչուներ էին, տանկիստներ, հրաձիգներ. շատերն աշխատում էին գործարաններում ու կոլխոզային դաշտերում, մյուսներն էլ արդեն ուսուցիչներ էին դարձել, բայց չէին մոռանում իրենց թանկագին ուսուցչին, որին ռազմաճակատում բոլորը Քեռի Կարմիզ էին ասում։ Նա շատ քաջ զինվոր էր, նրան ճանաչում էր նույնիսկ բանակի հրամանատարը։ Եվ ահա Քեռի Կարմիզը սվինամարտի ժամանակ սրախողխող է անում ֆաշիստին և հայ վիրավոր զինվորին դուրս բերում կրակի գծից։

Պատմվածքներ կան նաև պիոներական աշխատանքի և արտադպրոցական խմբակների մասին։

Կարդացեք Սաղաթել Հարությունյանի «Հարյուրերորդ հիերոգլիֆը» գիրքը։

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ՊԻՈՆԵ՛Ր, ՊԱՐԱՊԻՐ ՍՊՈՐՏՈՎ

ՀՐԱՆՏ ՇԱՀԻՆՅԱՆ

*(Սպորտի վաստակավոր վարպետ, մարմնամարզության գծով աշխարհի չեմպիոն)*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ մեծ նշանակություն են տվել ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացմանը, որովհետև սպորտով պարապողները ձեռք են բերում ամուր առողջություն, ուժ, գիմացկունություն, աշխատասիրություն։*

*Մարդու կյանքի խնդիրներից մեկն էլ այն է, որ ժամանակն օգտակար և հետաքրքիր անցնի։ Սպորտը մրցություն է, իսկ որտեղ կա մրցություն, այնտեղ կա հետաքրքրություն։ Սպորտը կոփում է ոչ միայն ֆիզիկապես, այլև օժանդակում մարդու հոգեկան աշխարհի ձևավորմանը, կամքի ուժի և համառության ամրապնդմանը, ներվային սիստեմի աշխատանքի կարգավորմանը։ Ահա թե ինչու շախմատը նույնպես համարվում է սպորտի ձևերից մեկը։*



*Սպորտի ձևերը շատ են. թեթև ատլետիկա, լող, սպորտ խաղեր, ձմեռային սպորտի ձևեր, ծանր ատլետիկա, մարմնամարզություն և այլն։*

*Յուրաքանչյուր մարդ կարող է ընտրել սպորտի իր սիրած ձևը։ Միայն անհրաժեշտ է հաշվի առնել կազմվածքի առանձնահատկությունները։ Դպրոցականների համար ավելի նպատակահարմար է պարապել մարմնամարզությամբ։ Հետագայում, եթե կազմվածքը չի նպաստի մարմնամարզության մեջ հաջողություն ունենալուն, կարելի է ընտրել սպորտի որևէ հարմար ձև։ Այս դեպքում մարմնամարզությունը կտա ընդհանուր ֆիզիկական պատրաստություն։ Մարմնամարզության կողքով չի կարող անցնել ոչ մի սպորտսմեն, եթե ուզում է հաջողության հասնել իր ընտրած ձևում։*

*Ես մարմնամարզությամբ սկսել եմ պարապել տասներեք տարեկան հասակից։ Այն ժամանակ շատ թույլ էի և նիհար։ Ինձ համար ծանր էր շատ թե քիչ դժվարին վարժությունններ կատարելը։ Իմ կազմվածքի թուլությունը տեսնելով, ոմանք գտնում էին, որ ինձանից սպորտսմեն դուրս չի գա։*

*Բայց ես համառ աշխատանքի շնորհիվ, հետզհետե կոփեցի օրգանիզմս, ձեռք բերեցի ֆիզիկական ուժ և կարողացա դառնալ մեր երկրի լավագույն մարզիկներից մեկը։*

*Մարմնամարզությունը ֆիզիկական դաստիարակության ավելի օգտակար և գեղեցիկ ձևերից մեկն է և հետաքրքիր է ոչ միայն մրցության, այլև առօրյա պարապմունքների ժամանակ։*

*Մարմնամարզական վարժությունները բազմազան են։ Այդ բազմազանությունը մատչելի է դարձնում այդ ձևը բոլոր հասակների համար։*

*Մեր երկրում ֆիզկուլտուրայով և սպորտով պարապելու համար հատկապես լայն հնարավորություններ կան պիոներների և դպրոցականների համար։ Հայաստանում նույնպես ստեղծված են շատ սպորտային դպրոցներ, որտեղ ֆիզիկական դաստիարակություն են ստանում հազարավոր դպրոցականներ։ Երեխաները կարող են պարապել նաև դպրոցներում կազմակերպված արտաժամյա խմբակներում. իսկ սկսնակ սպորտսմենի համար հատկապես կարևոր է պարապել մասնագետի անմիջական հսկողությամբ։*

*Յուրաքանչյուր դպրոցում հաճախակի պետք է անց կացվեն սպորտային մրցություններ։ Սխալ է, երբ երեխաների դպրոցական, շրջանային, քաղաքային և ռեսպուբլիկական մրցումներում մասնակցող թիմերի կազմը փոքրաթիվ է լինում։ Այդ դեպքում ճիշտ կարծիք չի կազմվում դպրոցի, շրջանի, քաղաքի կամ ռեսպուբլիկայի սպորտային վիճակի մասին։ Որքան շատ մասնակցող լինի մրցումներում, այնքան լավ։*

*Սպորտով պետք է պարապեն բոլորը։ Իսկ դպրոցականի համար դա պարտադիր է։ Պիոներները և դպրոցականները պետք է լինեն կարգապահ, սովորեն գերազանց և անպայման պարապեն սպորտով։*

# ԷԺԱՆԱԳԻՆ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ



Գ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

(Երևանի Պլանետարիի գիտական աշխատող)

Հայկուշի ընկերուհի Լուսիկը մի գիրք էր բերել նրան նվիրելու։ Դա տասնյոթերորդ դարի ֆրանսիացի գրող Սիրանո Դե Բերժերակի «Լուսնի պետությունների պատմությունն» էր։ Հայկուշը բացեց գիրքն ու սկսեց կարդալ։

Գրքում հեղինակը պատմում էր, որ ինքն ինչ-որ բանով մի անգամ երկրագնդի մակերևույթից շատ վեր բարձրացավ։ Երբ մի քանի ժամ հետո ցած իջավ, զարմանքից սառեց։ Ինքը ոչ թե իջել էր Ֆրանսիայում, այլ Կանադայում։ Ատլանտյան օվկիանոսի վրայով կատարված «թռիչքը» նա բացատրում էր նրանով, որ ճանապարհորդը կտրվել է երկրագնդի մակերևույթից։ Երկրագունդը շարունակել է իր պտույտը, դրա համար էլ նա ցած էր իջել Կանադայում։

«Ուրեմն, ես ճիշտ եմ ասել,— մտածում էր Հայկուշը.— չէ՞ որ այն, ինչ տասնյոթերորդ դարում ենթադրություն էր, այժմ իրականություն է դարձել։ Այժմ կա ուղղաթիռ։ Կարելի է երկրագնդի մակերևույթից վեր բարձրանալ և օդի մեջ «կախվել», մինչև որ ցանկացած քաղաքը երկրի պտույտի հետևանքով մոտենա մեզ։ Սա շատ լավ, էժան ու պարզ ճանապարհորդություն է։ Այսպիսով մարդիկ կխուսափեն գնացքների ու նավերի հոգնեցուցիչ դժվարություններից։ Ամեն մի ժամում էլ հնարավոր կլինի անցնել մոտ հազար վեց հարյուր կիլոմետր. հետևապես շատ երկար սպասելու կարիք չի լինի, քանի որ երկրագնդի շրջագիծը ընդամենը քառասուն հազար կիլոմետր է»։

Ամեն ինչ շատ որոշակի էր թվում Հայկուշին։ Նա որոշեց այս մասին հայտնել ընկերուհուն՝ Լուսիկին։ Ա՞յ թե էժանագին ճանապարհորդություն է, հա՞...

— Դու սխալվում ես,— մեղմ ձայնով ասաց Լուսիկը։— Սիրանո Դե Բերժերակը նույնպես սխալվել է։ Երբ ինքնաթիռը, աերոստատը կամ ուղղաթիռը օդ են բարձրանում, նրանք իրականում երկրագնդից չեն կտրվում, այլ մնում են կապված նրա օդային շերտին։ Մթնոլորտից կախված, նրանք երկրագնդի հետ պտտվում են նրա առանցքի շուրջը։ Չէ՞ որ օդը, առանձնապես նրա ցածի խիտ շերտերը, պտտվում են երկրագնդի հետ միասին։ Նա իր հետ տանում է այն ամենը, ինչ որ գտնվում է նրա մեջ՝ փոշու ամենամանր մասնիկներից սկսած մինչև ուղղաթիռը։ Գիտես թե ինչ կլիներ, եթե օդը չմասնակցեր երկրագնդի պտույտին։ Այնպիսի սարսափելի քամի կառաջանար, որ մեզ հայտնի ահռելի փոթորիկներն ու մրրիկները նրա համեմատ զեփյուռ կթվային։ Իսկ եթե այդպես լիներ, ամենածանր իրերն ու կենդանիները քամին տաշեղի նման կքշեր ու կտաներ։

Եթե երկրագունդը շրջապատված չլիներ օդային թաղանթով, հնարավոր չէր լինի օգտվել էժանագին ճանապարհորդության այդ եղանակից։ Այդ դեպքում էլ օդանավը պտտվող երկրի մակերևույթից վեր բարձրանալով նրա ձգողության սահմաններից դուրս չէր գա։ Իներցիայով պետք է շարունակել շարժվել ճիշտ այնպիսի արագությամբ և ուղղությամբ, որպիսին ունի երկիրը։ Հետևապես ուղղաթիռը բարձրացած տեղում էլ կիջնի, ինչպես վեր նետված գնդակը գնացքի մեջ։ Գնդակը նույն տեղն է ընկնում, չնայած որ գնացքը մեծ արագությամբ առաջ է սլանում։

Եթե մեկը կարողանար գտնվել երկրագնդից այնքան հեռու, որ նրա վրա քիչ ազդեին, կամ բոլորովին չազդեին երկրի ձգողական ուժը, մթնոլորտն ու իներցիան, ապա նա կկարողանար օգտվել «էժանագին ճանապարհորդությունից»։ Քսանչորս ժամվա ընթացքում այդպիսի մարդը կարող էր տեսնել նույն զուգահեռականի վրա գտնվող բոլոր կայաններն ու քաղաքները։

Լուսիկի բացատրածն այնքան պարզ էր, որ Հայկուշն այլևս չէր կարող հակաճառել։

# ՌԵԱԿՏԻՎ ՇԱՐԺԻՉՆԵՐ

Բ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

(Ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների թեկնածու)

*Ծովերի խորքերում ապրող ութոտանի կոչվող հրեշը ունի մկանային պարկ։ Այդ պարկը հետզհետե լցվում է ջրով, որից հետո կենդանին մկանների ուժեղ սեղմամբ ջուրը մեծ արագությամբ դուրս է մղում։ Մղվելու ժամանակ ջուրը հրում է հրեշին և նա առաջ է շարժվում։ Այս գործողությունը պարբերաբար կրկնելով, ութոտանին կարողանում է ազատ կերպով մի տեղից մյուսը տեղափոխվել։ Այդպիսի «ռեակտիվ շարժիչներ» ունեն նաև մի շարք այլ կենդանիներ և նույնիսկ բույսեր։ Այդ նույն սկզբունքից են օգտվել մարդիկ ռեակտիվ շարժիչներ պատրաստելու ժամանակ։*

*Դեռևս մի քանի հարյուր տարի մեզանից առաջ, ռուսական բանակում գործածվում էին ազդանշանային հրթիռներ։ Մի ծայրը բաց գլանը լցվում էր վառոդի ու ածուխի խառնուրդով և բաց ծայրից այրվում։ Ինչպես գիտենք, գազերը ճնշում են գործ դնում բոլոր ուղղություններով հավասարաչափ։ Գազերի ճնշումը գլանի պատերի վրա հավասարակշռվում էր։ Բաց ծայրից գազը ազատ կերպով դուրս էր գալիս։ Մնում էր միայն հատակի վրա եղած ճնշումը, որը հրթիռին հրում էր առաջ։*

*Հրթիռները, ինչպես նաև ռեակտիվ շարժիչները, հետզհետե կատարելագործվեցին և տարածվեցին ժամանակակից ավիացիայում։ Այդ գործում շատ մեծ է ռուսականավոր գիտնական և ինքնուս գյուտարար Կոնստանդին Էդուարդովիչ Ցիոլկովսկու (1857—1935 թթ.) դերը։ Բացի ռեակտիվ շարժման մանրամասն տեսությունից, նա տվել է նաև ռեակտիվ շարժիչի մի շարք ինքնուրույն նախագծեր։ Քանի որ վառոդը շատ շուտ է այրվում, Ցիոլկովսկին այն փոխարինեց այլ վառելանյութով՝ ջրածինը այրեց թթվածնի մեջ։*

*Ռեակտիվ օդանավերում գործածում են հեղուկ թթվածին, որովհետև նա քիչ տեղ է գրավում. նրա մեկ լիտրը գոլորշիանալու դեպքում դառնում է 789 լիտր։ Բացի հեղուկային ռեակտիվ շարժիչներից, ժամանակակից ավիացիայում գործածում են նաև օդային ռեակտիվ շարժիչներ։ Դրանց մեջ, այրման համար, օգտագործվում է մթնոլորտի թթվածինը։*

*Ռեակտիվ շարժիչները հնարավորություն տվեցին հարյուրավոր կիլոմետրերով ավելացնել օդանավերի արագությունը։ Եվ իրոք, եթե սովորական պտուտակավոր օդանավի ամենամեծ արագությունը մի ժամում 800 կիլոմետրից չի անցնում, ապա ռեակտիվ օդանավով գերազանցվեց անգամ ձայնի տարածման արագությունը. 1953 թվականին մի ժամում հասցվեց 1212 կիլոմետրի, իսկ*



*հիմա հասնում է մոտավորապես 2000 կիլոմետրի։ Ռեակտիվ օդանավերի օգտագործումը քաղաքացիական ավիացիայում կարող է ժամանակի հսկայական խնայողություն տալ։*

*Ռեակտիվ շարժիչները հնարավորություն տվեցին ավելացնել նաև թռիչքի բարձրությունը։ Սովորական բոլոր տիպերի օդանավերի ու արկերի թռիչքի բարձրությունը խիստ սահմանափակ է, քանի որ բարձր շերտերում մթնոլորտը շատ նոսր է։*

*Չնայած մեծ առավելություններին, օդային ռեակտիվ շարժիչներ ունեցող օդանավերն էլ շատ բարձր չեն կարող թռչել, քանի որ նրանք էլ մթնոլորտն են օգտագործում։*

*Մթնոլորտից բոլորովին անկախ են հեղուկային ռեակտիվ շարժիչները. մթնոլորտը միայն խոչընդոտ կարող է հանդիսանալ նրանց շարժմանը։ Այդ պատճառով էլ հեղուկային ռեակտիվ շարժիչներով օդանավերը կարող են բարձրանալ ցանկացած չափով։ Նրանք առանց որևէ դժվարության կարող են բավական մեծ արագությամբ թռչել նաև միջմոլորակային տարածություններում։ Բայց հե-*

ղեկային ռեակտիվներն էլ մի ուրիշ թերություն ունեն։ Նրանք մեծ քանակությամբ վառելանյութ են ծախսում, որը փոքրացնում է նաև նրանց գործողության շառավիղը։

Ատոմային էներգիայի օգտագործումը շրջադարձ կլինի ավիացիայի պատմության մեջ։ Ուրանի կամ այլ քայքայվող նյութի մի փոքրիկ կտորը բավական կլինի, որպեսզի օդանավը տարիներ տևող անվայրէջք թռիչք գործի։

Ժամանակակից գիտության ու տեխնիկայի և մասնավորապես ռեակտիվ շարժիչների կատարելագործումը հնարավորություն կստեղծի մոտակա ժամանակներում կատարել միջմոլորակային թռիչքներ։




### ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԶԱՅՆՎՈՐԴ

Քառակուսիների մեջ տեղադրված պայմանական նշանների համաձայն գտնել քաղաքներն այնպես, որ նախորդ բառի վերջին տառը հանդիսանա հաջորդ բառի սկզբի տառը։

1, 2. Միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներ, 3. Ածխային ավազանի կենտրոն ՍՍՌՄ եվրոպական մասում. 4. Մարզային կենտրոն ՍՍՌՄ եվրոպական մասում, 5. Մարզային կենտրոն Ուկրաինայում, 6. Քաղաք Ադրբեջանում, 7. Մարզային կենտրոն ՍՍՌՄ արևելյան մասում, 8. Գունավոր խոշորագույն հանքավայր, 9. Քաղաք Ուկրաինայի արևմուտքում, 10. Քաղաք Միջին Ասիայում, 11. Քաղաք Ուրալում, 12. Պղնձի հանքավայր Հայաստանում, 13. Քաղաք Ուրալում, 14. Երկաթի խոշորագույն հանքավայր Ռուսաստանում, 15. Մարզային կենտրոն ՍՍՌՄ եվրոպական մասում. 16. Նավահանգիստ Սև ծովի ափին։




Կազմեց՝ Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

### ՄՏԱԾԻՐ ԵՎ ԳՏԻՐ

#### Վախեցած մրջյունը

Մրջյունի բույնը գտնվում էր տաս մետր բարձրություն ունեցող պատի գլխին։ Մի օր մրջյուններից մեկը մինչև պատի տակ հասնելը սաստիկ հիվանդացավ։ Նա սկսեց բարձրանալ դեպի իր բույնը, բայց այնքան թույլ էր, որ ցերեկը բարձրանում էր երեք մետր, իսկ գիշերը երկու մետր իջնում էր։

Գտեք, թե այդ մրջյունը քանի՞ օրից հետո կհասնի իր բույնը։



Այն ո՞ր թիվն է, որին եթե ավելացնենք 7, ստացված գումարը բաժանենք 7-ի, ապա քանորդից հանենք 7 և մնացորդն էլ բազմապատկենք 7-ով, մնա 7։

Կազմեց՝ ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

### ԽԱՂԵՐ

#### Դրավիր շրջանակը

Օղակավար Սուրիկը, հրապարակի մի կողմում, մոտ կես մետր տրամագծով ինը շրջանակ գծեց, ապա պիոներներին հրահանգեց.

— Շարվե՛լ։

Շրջանակներից երեսուն քայլ հեռու տասը պիոներ հակառակ շարք կանգնեցին։

— Երբ ես կհրահանգեմ՝ վազքով մարշ, պետք է վազեք և ամեն մեկդ գրավեք մի շրջանակ։ Ով ուշանա և դուրս մնա շրջանակից, նա պարտված կհանաչվի,— ասաց Սուրիկը։

— Իսկ դրա համար նա թող երգի, պարի, արտասանի,— ասաց Խաչիկը։

Եվ խաղն սկսվեց։

#### Ուժ քայլ

Ամեն մեկդ հերթով պետք է անցնեք ութ քայլ և ամեն մի քայլը կատարելիս ասեք մի թռչունի անուն,— ասաց օղակավարը։

Երեխաներն սկսեցին, բայց դժվարանում էին։

— Իսկ այժմ քայլեցեք և ասացեք որևէ կենդանու անուն, գուցե ավելի հեշտ լինի,— ասաց Սուրիկը։

Պիոներներն այդ ձևով էլ փորձեցին։

Դուք էլ խաղացեք այս խաղը։

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

### Գայլը, այծը և կաղամբը

Սա հին հեքիաթ-խնդիր է։

Մի մարդ նավակով գետի մի ափից մյուսն է անցկացրել գայլին, այծին և կաղամբը։ Նավակում կարող է տեղավորվել մի մարդ, իսկ նրա հետ՝ կամ գայլը, կամ այծը, կամ կաղամբը։ Եթե առանց մարդու գայլին թողնենք այծի հետ, ապա գայլը այծին կուտի, իսկ այծը կաղամբը կուտի, եթե նրա հետ լինի։ Մարդու ներկայությամբ ոչ ոք ոչ մեկին վնաս չի տա։ Համենայն դեպս, մարդը իր բեռն անցկացնում է գետով։

Ինչպե՞ս է անում նա։





### Փորձիր անջատել

Այս շրջանակի վրա գծիր միևնույն մեծության երեք շրջանակ, այնպես, որ այստեղ եղած նկարները անջատվեն միմյանցից։

Կազմեց՝ Մ. ՕԹԱՐՈՎ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Սիրելի պատանի ընկերներ — ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ
2. Բարով եկար — Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ
3. Դեպի գործ — Շ. ՍԻՄՈՆՅԱՆ . . . . . . 1
4. Սկսվեց նոր ուսումնական տարին . . . . . . 2
5. Նարեկը — Շ. ԹԱԹԻԿՅԱՆ . . . . . . 3
6. Աշնանային ցնծություն — Ս. ԽԱՐԱՁՅԱՆ . . . 5
7. Վերջին խարույկը — Ս. ՀՈՌՈՓՅԱՆ . . . . . 5
8. Երազանք — Է. ԱՎԱԳՅԱՆ . . . . . . 6
9. Չուղարկված նամակը — Ա. ՇԱՀԻՆՅԱՆ . . . 7
10. Մեր ընթերցողների ստեղծագործություններից . . 9
11. Այնտեղ, ուր չկա երջանիկ մանկություն . . . . 10
12. Վոլոդյա Ուլյանով — Ն. ՎԵՐԵՏԵՆՆԻԿՈՎ . . . . 13
13. Երգ տանկիստի մասին — Հ. ՍԱՀՅԱՆ . . . . 17
14. Առաջին ճինգը — Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ . . . . . 17
15. Նա արժանի է — Ծ. ՇԱՂԳԱՄՅԱՆ . . . . . 18
16. Մեծ օգնություն — Ա. ՄԱՆԴԱԼՅԱՆ . . . . 19
17. Պիոներական կրծքանշանները — Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ 21
18. Հեռավոր Արևելքում — Պ. ՍԿՐԻՊԿԻՆ . . . 22
19. Հերոսական Վյետնամը . . . . . . . . 23
20. Լճակի ափին — Վ. ԱՐԱՄՅԱՆ . . . . . . 25
21. Հարազատ դպրոց — Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ . . . . 27
22. Սովետական կետորսները — Ա. ՍՈԼՅԱՆԻԿ . . 28
23. Անվանի գրողը։ Յան Ռայնիս — Լ. ԱՍՄԱՐՅԱՆ . 30
24. Կարդա այս գիրքը . . . . . . . . . 31
25. Պիոներ, պարապիր սպորտով — ՀՐ. ՇԱՀԻՆՅԱՆ . 32
26. Էժանագին ճանապարհորդություն — Պ. ԳԵՎՈՐԳՅԱՆ 33
27. Ռեակտիվ շարժիչներ — Բ. ԹՈՒՄԱՆՅԱՆ . . . 34
28. Հետաքրքիր ժամանց . . . . . . . . . 35
29. Դպրոցական երգ — Ա. ՀԱԿՈԲՅԱՆ


Շապիկը նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ




„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 12841։ Պատվեր 844։ Տիրաժ 5000։ Տպագրական $4^1/_2$ մամուլ։ Ստորագրված է տպագրության 7/IX 1955 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ԵՐԳ

Խոսք՝ ՍԱՐՄԵՆԻ

Երաժշտություն՝ Ա. ՀԱԿՈԲՅԱՆԻ

Tempo di marcia

Սո-վե-տա-կան մեծ աշխար-հի զա-վակ-ներն ենք եր-ջա-նիկ, ծաղ-կիր հա-վետ

մեր պան-ծա-լի, Սո-վե-տա-կան Հայ-րե-նիք -նիք լի-նենք հաղ-թող

լի-նենք ա-րի, սո-վո-րենք միշտ միշտ գե-

րա-զանց, որ մեր նը-ման մեզ միշտ սի-րի

եր-կի-րը մեր եր-կի-րը փա-ռա-պանծ: ա-պանծ:

Դպրոցական ենք մենք այսօր,
Իսկ վաղը քաջ մարտիկներ,
Զվարթ ու զիլ, գիշեր ու զոր
Հնչում է միշտ երգը մեր: } կրկնել

ԿՐԿՆԵՐԳ.— Լինենք հաղթող, լինենք արի,
Սովորենք միշտ, միշտ գերազանց,
Որ մեր նման մեզ միշտ սիրի
Երկիրը մեր, երկիրը փառապանծ:

Սովորելով ենք միշտ ճարթում
Դժվար ճամփան գիտության.
Նայում է մեզ, ուրախ ժպտում
Արևաշող ապագան: } կրկնել

ԿՐԿՆԵՐԳ.— Լինենք հաղթող... և այլն:

Սովետական արևն է վառ
Լուսավորում մեր ուղին,
Հայրենիքում մեր ծաղկավառ
Սիրում են միշտ հաղթողին: } կրկնել

ԿՐԿՆԵՐԳ.— Լինենք հաղթող... և այլն:

ԳԻՆԸ 2 Ռ.

ԱՌԱՋԻՆ ԴԱՍԸ

Ֆոտո-էտյուդ Ս. ԽՈՍՐՈԵՎԻ

